Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն

ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 70-ԱՄՅԱԿԸ

*Վ. ՄՈՎՍԻՍՅԱՆ— Պարենային ծրագրի իրականացման ճանապարհով . . . . . . . . 3*
*Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Կարգապահություն՝ բոլոր օղակներում . 10*
*Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Վերակառուցման գործիքը . . . 17*

ԱՐԱԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱ

*Վ. ՋԱԼԱԲՈՎ— Երկրորդային, բայց ոչ երկրորդական . 23*
*Դ. ՂԱԶԱՐՅԱՆ— Անհատական աշխատանքը վերակառուցման պայմաններում . . . . . . . 29*
*Խ. ՄՈՒԹԱՖՅԱՆ, Ա. ՃՈՒՂՈՒՐՅԱՆ— Արտադրության արդյունավետության հաշվառման դերը գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում . . 35*
*Ա. ՍԱՔԱՆՅԱՆ— Գլխավոր ուղղությունը՝ ինտենսիվացում . 39*

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ

*Ռ. ՌԱՖՅԱՆ— Կուսշարքերի որակական կազմի բարելավման համար . . . . . . . . 46*

ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆ. ԱԿՏԻՎԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

*Հ. ՊՈՂՈՍՅԱՆ— Սովետական ապրելակերպը և աշխատավորների ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործումը . . . . . . . . 52*

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

Վ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ— Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինան և զինաթափման պրոբլեմը . . . . . . . . 57
Ն. ԿԵՅԶԵՐՈՎ— Դասակարգային շահերի հակամարտությունը և «մասնավոր նախաձեռնության հասարակության» ճգնաժամի սրումը . . . . . . 66
Ռ. ԱԹՅԱՆ— Սոցիալիստական ընկերակցության երկրների մշակութային համագործակցությունը . . . 74

ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԿՅԱՆՔ

Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ— Տիեզերքի մարդաբանական սկզբունքը գիտության և կրոնի տեսանկյունից . . . 80

ԺԱՄԱՆԱԿ ԵՎ ՄԱՐԴԻԿ

Վ. ՇԱՀԻՆՅԱՆ— Հողին դաշն կնքած . . . . . 86
ՕՖ. ՏՈՆՈՅԱՆ— Որ բարի լինի օրը . . . . . 90

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Ս. ԲԱՐԴԱՍԱՐՅԱՆ— Հեղափոխականի բոցաշունչ խոսքը . 94

1917։ Հեղափոխության տարեգրության էջերից . . . 96



Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11








# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ


Վ. ՄՈՎՍԻՍՅԱՆ
Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, հանրապետության պետագրոարդի նախագահ


Մեր երկրում ծավալվող վերակառուցման նպատակն է արագացնել սոցիալիստական հասարակության առաջընթացը։ Դրան է նպատակամղված կուսակցության քաղաքական գիծը, որը մշակվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի կողմից։ Սկզբունքայնորեն կարևոր որոշումներ ընդունվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան և հունիսյան պլենումներում։ Դրանք կուսակցությանն ու ժողովրդին զինում են վերակառուցման տեսությամբ, նրանց մոբիլիզացնում առավել խոր բարեփոխումների, առավել համարձակ միջոցառումների, որոնք կոչված են սոցիալիզմին հաղորդելու հասարակական կառուցվածքի ամենաժամանակակից ձևեր։

Կուսակցության տնտեսական քաղաքականության գլխավոր խնդիրը ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի ապահովումն է, սովետական մարդկանց օրավուր աճող նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումը՝ ժողովրդական տնտեսության կայուն, հարահուն զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման հիման վրա։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն օղակ է հանդիսանում պարենային ծրագրի իրագործումը։ Գյուղատնտեսության, ագրոարդյունաբերական ողջ համալիրի զարգացման հիման վրա պարենային հուսալի բազայի ստեղծումը համակուսակցական, համաժողովրդական խնդիր է։ Ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում ասաց Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը, «Ներկա փուլում բոլոր օբյեկտիվ պայմանները ստեղծվել են, որպեսզի մի յուրօրինակ ցատկ տեղի ունենա գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ավելացման գործում։ Արմատական տեղաշարժի համար հնարավորություններ կան բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում»։

Գյուղատնտեսության, ագրոարդյունաբերական ողջ համալիրի վիճակի վերլուծության համար ելակետային է ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումը։ Այդ ժամանակվանից անցել է հինգ տարուց մի փոքր ավելի։ Ժամանակը ցույց տվեց, որ կուսակցությունը ճիշտ է վարվել՝ ընդունելով պարենային ծրագիրն ու մի շարք այլ ծանրակշիռ որոշումներ ագրոարդյունաբերական համալիրի զարգացման հասունացած պրոբլեմների վերաբերյալ։ Մշակված միջոցառումների իրականացման համար աշխատանքներ են տարվում բոլոր ուղղություններով։ Իրականացվում է գյուղատնտեսական մեքենաշինության լայն արդիականացումը, որը հնարավորություն կընձեռի կոլեկտիվ և պետական տնտեսություններն ապահովել անհրաժեշտ մեքենաներով ու սարքավորումներով։ Զարգանում է պարարտանյութերի և գյուղատնտեսության քիմիացման այլ միջոցների արտադրությունը։ Զգալիորեն աճել է ոռոգելի հողերի ֆոնդը։ Մեծացել են գյուղի սոցիալական վերափոխման մասշտաբները։ Ընդլայնվել է բնակելի տների, մշակութակենցաղային նշանակության օբյեկտների, ճանապարհների շինարարությունը։ Սոցիալական պլանների կատարումը, գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնող միջոցների հետ մեկտեղ, բարենպաստ պայմաններ է ստեղծում կադրերին գյուղում ամրապնդելու համար։ Առավել բարձր գնման գների հիման վրա կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական վիճակի բարելավման խոշոր միջոցառումների

իրականացումը բարերար ազդեցություն է ունենում նրանց տնտեսական գործունեության արդյունքների վրա:

Կուսակցության Կենտկոմի մայիսյան պլենումից հետո որոշակի փորձ է կուտակվել գյուղատնտեսական արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման, կուտակսական լծակների օգտագործման, աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ներդրման, արտադրական ու սոցիալական խնդիրների լուծման, աշխատավորական կոլեկտիվների ինքնուրույնության ու պատասխանատվության բարձրացման գործում: Ընդհանուր առմամբ, փոխվել է վերաբերմունքը ագրոարդյունաբերական համալիրի պրոբլեմների նկատմամբ, որի զարգացման հարցերին տրվում է առաջնային նշանակություն:

Կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման շնորհիվ մեծացել է հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը, բարձրացել է հողագործության ու անասնապահության մթերատվությունը, աճել են գյուղատնտեսական արտադրանքի մթերումները: Դրա հետ մեկտեղ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում, հանրապետության ժողովրդական տնտեսության ճյուղերում, այդ թվում նաև ագրոարդյունաբերական համալիրում, առկա են մի շարք էական թերություններ ու չլուծված պրոբլեմներ: Վերակառուցումը այստեղ նս տեղապտույտ է տալիս: Գլխավոր թերություններից մեկը ստեղծված տնտեսական պոտենցիալի վատ օգտագործումն է: Վերջին տասը տարում հանրապետության գյուղատնտեսության հիմնական ֆոնդերի կրկնապատիկ աճի պայմաններում համախառն արտադրանքը մեծացել է ընդամենը 48 տոկոսով, իսկ առանձին շրջաններում ֆոնդահատույցն է՛լ ավելի ցածր է եղել: Այսպես, տասնմեկերորդ հնգամյակում տասներորդի համեմատությամբ Անիի, Վարդենիսի, Գորիսի, Գուգարքի, Արարատի, Արագածի ու Ամասիայի շրջաններում ֆոնդահատույցը նվազել է 31—43 տոկոսով: Ծյուղի էքստենսիվ վարումը հանգեցրել է ֆինանսական լարվածության մեծացման: Ժամկետանց պարտքերը 1987 թվականի սկզբին կազմել են 148 միլիոն ռուբլի:

Հանրապետության գյուղատնտեսության մեջ տարիներ ի վեր գործել է ծախսողական մեխանիզմը, տնտեսավարման մի համակարգ, որը կողմնորոշված է դեպի համախառն ցուցանիշներ: Դանդաղ է բարձրանում անասնապահության մթերատվությունը: Առանձին շրջաններում վիճակն առհասարակ անմխիթար է:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջներին չի համապատասխանում պետական, կուսակցական կարգապահության մակարդակը: Տնտեսությունների հինգերորդ մասը սիստեմատիկաբար չի կատարում պետությանը մսի, քառորդը՝ կաթի, 38 տոկոսը՝ բանջարեղենի հանձնման պլանները:

Պարենային ռեսուրսների ծավալների մեծացման դանդաղ տեմպերը արտադրական կարողությունների գործարկման առաջադրանքների խրոնիկական ձախողման արդյունք են: Վերջին տասը տարում չի յուրացվել մոտ 200 միլիոն ռուբլի կապիտալ ներդրում:

Արդի տնտեսական ռեֆորմի հիմնական օղակներից մեկն է կոլեկտիվ ու ընտանեկան կապալների լայն արմատավորումը: Այդ ուղղությամբ մեզանում որոշ աշխատանք կատարվել է: Գյուղատնտեսության աշխատողների երեք քառորդն ընդգրկված է բրիգադային, ընտանեկան ու անհատական կապալների մեջ: Սակայն այս գործում մեզ մոտ շատ է ձևականությունը և իրականում ստացվում է, որ կապալ կա, իսկ աշխատանքի արտադրողականության էական աճ չի նկատվում:

Գյուղերի սոցիալական կայունացման, դաշտերի ու ֆերմաների աշխատողների բարձրարտադրողական աշխատանքի ապահովման հիմքը կենսապայմանների բարելավման նկատմամբ ամենօրյա հոգատարությունն է: Եվ այստեղ ուղղակի պետք է ասել, որ մենք դեռևս պարտք ենք գյուղի բնակիչներին: Շատ բնակավայրեր չունեն բարեկարգ ճանապարհներ, խմելու ջուր, գազիֆիկացված չեն, պակասում են սոցկուլտկենցաղի ու առողջապահության օբյեկտները: Այս ամենը հանգեցրել է առանձին ռեգիոնների գյուղերի ապակայունացման, բնակչության արտահոսքի:

Պրոբլեմի լուծման նպատակով իրականացվում են մի շարք միջոցառումներ, և նկատվում են առանձին գործնական տեղաշարժեր: Դրանցից է Աշտարակի շրջանի Սաղմոսավանք[illegible] և Տեղեր, Ղափանի շրջանի Շիշկերտ, Եղեգնաձորի շրջանի Գնիշիկ, Մեղրու շրջանի Ափկեզ գյուղերի վերականգնումը, որը ցույց է տալիս մշակված կուրսի ճշտությունը և թելադրում այդ աշխատանքների արագացման ու ընդլայնման անհրաժեշտությունը:



Քիչ ժամանակ չի անցել ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո, սակայն գյուղատնտեսության մասնագետների և ագրարային գիտության աշխատողների մեծ բանակի աշխատանքում էական վերակառուցում չի նկատվում: Գյուղատնտեսության շատ ղեկավարների ու մասնագետների մոտ զգացվում է տնտեսագիտական գրագիտության ու բանիմացության պակաս: Մենք դեռևս չենք հաղթահարել կառավարման տնտեսագիտական մեթոդների, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջադիմական ձևերի արմատավորման դանդաղ տեմպերը, ինտենսիվ տեխնոլոգիաների նկատմամբ արհամարհական վերաբերմունքը, անասունների շրջանցում վարակիչ հիվանդությունների տարածումը, ցեղաբուծական աշխատանքի խիստ ցածր մակարդակը:

Արդի ագրարային քաղաքականության կարևոր խնդիրներից է անձնական օժանդակ տնտեսությունների բուռն զարգացումը: Մինչդեռ գյուղական վայրերում մոտ 21 հազար երիտասարդ ընտանիքներ տնամերձ հողամասեր չունեն, իսկ ավելի քան 53 հազար ընտանիքներ կամ յուրաքանչյուր չորրորդը, օգտվում է սահմանված նորմաներից զգալիորեն պակաս հողամասերից: Գյուղական ընտանիքների կեսից ավելին առհասարակ անասուն չի պահում: Պարզ է, որ այս պայմաններում հանրապետության գյուղական բնակչության գերակշիռ մեծամասնությունը փաստորեն արտադրողից վերածվել է պարենամթերք սպառողի, և շուկայում էլ գյուղատնտեսական մթերքների գներն անչափ բարձր են:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջների լույսի ներքո անհրաժեշտ է ամենակարճ ժամկետներում քննության առնել ու լուծել անձնական օժանդակ տընտեսությունների արագացված զարգացումն ապահովելու հետ կապված բոլոր հարցերը: Պետք է վերանայվեն նաև նրանց հողամասերի չափերի ու անասնագլխաքանակի նորմաները, վերացվեն անհարկի սահմանափակումները: Լիովին պետք է բավարարվի կոլեկտիվ այգեգործությամբ զբաղվելու քաղաքացիների պահանջարկը:

Եվս մեկ կարևոր հարց: Տարիներ շարունակ, անգամ կառավարության կողմից ֆինանսական զգալի օգնության պայմաններում, հանրապետության լեռնային գոտում գտնվող մեծ թվով տնտեսություններ աշխատում են վնասով կամ ցածր շահութաբեր են: Անշուշտ, այդ տնտեսությունների մի մասն իրոք վնասով աշխատելու օբյեկտիվ պատճառներ ունի, որոնք կապված են հողերի բնական ցածր բերրիության հետ: Ո՞րն է այս դեպքում ելքը: ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, ագրոարդյունաբերական համալիրում տնտեսավարման նոր մեթոդները մեզ թույլ են տալիս մշակելու ոչ շաբլոն որոշումներ, գտնելու անձնական ու հասարակական շահագրգռության ավելի նպատակահարմար զուգորդման ուղիներ:

Պարզ է մեկ բան, որ հողը չպետք է վնաս բերի: Ու եթե արտադրության կազմակերպման ավանդական ձևերը հնացած են, ապա դրանք պետք է վճռականորեն փոխել: Այս առումով մեծ պոտենցիալ և հեռանկարներ ունեն ընտանեկան կապալը, վարձակալական ձևը, անհատական կապալը, ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունը կամ արտադրության կազմակերպման մյուս կոոպերատիվ սոցիալիստական ձևերը: Ներկայումս հանրապետության պետագրոարդը խիստ տարբերակված մոտեցում է ցուցաբերում յուրաքանչյուր այդպիսի տնտեսությունում տիրող իրադրության նկատմամբ:

Մեր հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի ծանրակշիռ ճյուղն է անասնապահությունը, և բնական է, որ անասնապահական մթերքների արտադրության ավելացման պրոբլեմները մշտապես գտնվում են կուսակցական, սովետական և ագրոարդի մարմինների ուշադրության կենտրոնում: Չնայած իրականացվող զգալի տեղաշարժերին, անասնապահության զարգացման ընդհանուր մակարդակը հեռու է բավարար լինելուց:

Դանդաղ է բարձրանում անասնապահության մթերատվությունը: Առանձին շրջաններում վիճակն առհասարակ անմխիթար է: Մեզ չի հաջողվել վերջնականորեն լուծել ոչ միայն անասնապահության, այլև ագրոարդյունաբերական ամբողջ համալիրի գլխավոր խնդիրը՝ բնակչությանը սննդամթերքի կայուն մատակարարումը: Այսօրվա դրությամբ մեկ շնչին ընկնող մսի սպառումը սննդի ֆիզիոլոգիական նորմաներից հետ է մնում 21 տոկոսով, ձվինը՝ 27, ձկնամթերքինը՝ 50 տոկոսով: Սպառման ընդհանուր հաշվեկշռում սեփական արտադրության անասնապահական մթերքների բաժինն աճում է աննշան տեմպերով և այսօր մսի գծով կազմում է 64 տոկոս, իսկ կաթինն ու կաթնամթերքինը՝ ընդամենը 35 տոկոս: Գաղտնիք չէ, որ անասնապահության զարգացման հիմքերի հիմքը կենդանիներին անհրաժեշտ քանակության և պատ-

շաճ որակի կերով ապահովելն է: Սակայն այսօր պրոբլեմը դեռևս արմատական լուծում չի ստացել: Բավական է ասել, որ հանրապետության անասնապահության տարեկան 830 հազար տոննա կերամիավոր պահանջի դեպքում կուտակվում է ընդամենը 710 հազար տոննա կամ պահանջարկի շուրջ 85 տոկոսը: Բնական է, որ կերի նման պակասը լրջորեն խոչընդոտում է անասնապահական մթերքների արտադրության աճը: Ստեղծված իրավիճակը գյուղում տնտեսական ու կազմակերպչական աշխատանքի դանդաղ վերակառուցման, հասունացած պրոբլեմների նկատմամբ կադրերի մի մասի պասսիվության ու անտարբերության հետևանք է: Ոչ բոլոր շրջաններում են ինչպես հարկն է ըմբռնել փոփոխությունների իմաստը, գնահատել վերակառուցման հնարավորությունները: Ագրոարդյունաբերական համալիրում լրիվ չեն օգտագործվում պլանավորման ու տնտեսավարման նոր կարգի առավելությունները: Այդ իսկ պատճառով մեր հանրապետությունում մսի ու կաթնամթերքի սպառման մակարդակը դանդաղ է աճում, բնակչությանն անհրաժեշտ սննդամթերքներով ապահովելու գործում մենք դեռևս հանդիպում ենք որոշակի դժվարությունների: Այս պրոբլեմի լուծումը պահանջում է ավելի լրիվ օգտագործել ներքին բոլոր ռեսուրսները՝ անասնապահությունն ինտենսիվ ուղու վրա փոխադրելու միջոցով:

Ընթացիկ հնգամյակում հանրապետության անասնապահների առջև խնդիր է դրված մսի արտադրությունը հասցնել մինչև 130 հազար, կաթինը՝ 625 հազար տոննայի, ձվինը՝ 680 միլիոն հատի: Այս բնագծերի նվաճումը նախ և առաջ պայմանավորված է անասուններին անհրաժեշտ քանակությամբ լիարժեք կերով ապահովելով:

Հանրապետության պետագրոարդը, վերլուծելով կերարտադրության վիճակը, պարզել է այդ բնագավառի հետ մնալու հիմնական պատճառները: Առաջին հերթին դա բոլոր կերային կուլտուրաների ցածր բերքատվությունն է, ցանքատարածությունների կառուցվածքային անկատարելությունը, սպիտակուցի մեծ դեֆիցիտը, խոտհարքների ցածր արդյունավետությունը, կերի մթերման ու պատրաստման առաջավոր տեխնոլոգիաների անբավարար ներդրումը, մեծ կորուստները կերի կուտակման, պահպանման ու օգտագործման ժամանակ, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի թույլ ներդրումը արտադրության մեջ: Դրա հետևանքով անասնակերի կուտակման պլանները շատ տնտեսություններում ու շրջաններում տարիներ շարունակ չեն կատարվում: Այս ամենը հանգեցրել է նրան, որ վերջին տարիներին ծախսվող կերի կառուցվածքում ավելացել է գնովի խտացված կերի բաժինը:

Սեփական արտադրության կերի մեջ սպիտակուցի գոյություն ունեցող դեֆիցիտը, ինչպես նաև համակցված կերի՝ ըստ սպիտակուցի անհավասար կշռվածությունը հանգեցրել են անասնապահական մթերքների արտադրության մեկ միավորին ընկնող կերի ծախսերի զգալի մեծացման: Ներկայումս կերի մեկ միավորի մեջ յուրացվող պրոտեինի քանակը կազմում է 85—90 գրամ (108—110 գրամի փոխարեն), որի հետևանքով հանրապետությունում տասնմեկերորդ հնգամյակի տարիներին խոշոր եղջերավոր անասունների մեկ ցենտներ քաշաճի վրա ծախսվել է 11,5, մեկ ցենտներ կաթի վրա՝ 1,7 և 1000 հատ ձվի արտադրության վրա՝ 3 ցենտներ կերային միավոր:

Ստեղծված վիճակից դուրս գալու, անասնապահությունը կերով ապահովելու համար ինչպիսի՞ ռեզերվներ ունենք: Առաջին հերթին դա կերային բոլոր կուլտուրաների բերքատվության և բնական խոտհարքների արդյունավետության բարձրացումն է, երկրորդ՝ ցանքատարածությունների կառուցվածքի կատարելագործումը, դրանցում հյութալի կերի արտադրության համար նախատեսված կերային կուլտուրաների բաժնի ավելացումը, խոզանի և միջնակա կուլտուրաների լայն ներդրումը, երրորդ՝ սպիտակուցի պահանջի ապահովումը ի հաշիվ սպիտակուցներով հարուստ կուլտուրաների ներդրման և կերի կուտակման ու պատրաստման առաջադեմ մեթոդների, մանրէակենսաբանական սինթեզի արտադրանքի, սննդարդյունաբերության և սննդի ձեռնարկությունների արտադրական մնացուկների լայն օգտագործման: Առաջին պլանում է կերի կորուստների դեմ հուսալի պատնեշի ստեղծումը կուտակման, պահպանման և օգտագործման ժամանակ:

Այս ռեզերվները գործի դնելու նպատակով հանրապետության պետագրոարդը մշակել ու ներկայումս իրականացնում է կերարտադրության ինտենսիվացման ու կերային սպիտակուցի արտադրության մեծացման կոմպլեքսային ծրագրեր: Նախատեսվում է էապես փոխել ցանքատարածությունների կառուցվածքը՝ միամյա խոտերի փոխարեն ընդարձակելով սպիտակուցներով հարուստ ջոբազգիների ցանքերը, ներդնել հացահատիկային, կերային բոլոր կուլտուրաների մշակման ինտենսիվ տեխնոլոգիաներ, ոռոգելի հողերում բարձրացնել այդ կուլտուրաների աճեցման, բնական խոտհարքների ու արոտավայրերի արդյունավետությունը:



Միջոցներ են նախատեսված նաև կերի որակի բարձրացման ուղղությամբ, դրա հավաքման, պահպանման ու օգտագործման լավագույն տեխնոլոգիայի կիրառման, կերարտադրության մեջ աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջավոր ձևերի լայն ներդրման, պահածոների, սննդի, կաթի արդյունաբերության ու գյուղատնտեսական թափոնները կերային նպատակով օգտագործելու համար: Նախատեսվում է համակցված կերի արտադրության զգալի մեծացում համապատասխան միջտնտեսային ձեռնարկություններում՝ սպիտակուցավիտամինային հավելուկների, մանրէակենսաբանական սինթեզի արտադրանքի օգտագործմամբ:

Այդ ամենը թույլ կտա կոշտ, հյութալի կերի ու հատիկախառն արտադրությունը 1990 թվականին հասցնել մինչև մեկ միլիոն տոննա կերային միավորի կամ 20 ցենտներ կերային միավորի՝ խոշոր եղջերավոր անասունի մեկ պայմանական գլխի հաշվով, 1985 թվականի 14,2 ցենտների դիմաց:

Պարզ է, որ սակավահող ու սահմանափակ ջրային ռեսուրսներով մեր հանրապետությունում և աշխատանքի համամիութենական բաժանման պահանջների պահպանման պայմաններում այս խնդիրը շատ բարդ է: Ղեկավարվելով անասնապահության ու կերարտադրության հրատապ պրոբլեմների լուծման սկզբունքորեն նոր մոտեցման մասին ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներով՝ մենք պետք է հասնենք կերարտադրման որակական բոլոր ցուցանիշների բարելավմանը, քանի որ միայն դրա հիման վրա կարելի է հասնել արտադրության աճի: Իսկ ի՞նչ գործնական խնդիրներ են ծառացած մեր առջև: Ինչպես հայտնի է, մեր հանրապետությունում կերարտադրության հիմնական աղբյուրը դաշտային հողերն են: Կերային կուլտուրաների ցանքատարածությունները ներկայումս կազմում են ընդհանուր վարելահողերի 57 տոկոսը: Այս պայմաններում կերային հողաշերտի հետագա ընդարձակումը նպատակահարմար չէ, ավելի ճիշտ՝ հնարավոր չէ: Ուստի դաշտային հողերում կերարտադրության բարձրացման գլխավոր ուղղություն է ընտրված վարելահողերի յուրաքանչյուր հեկտարի առավել արդյունավետ օգտագործումը: Սակայն ներկայումս մի շարք շրջաններում ու տնտեսություններում վարելահողերն արդյունավետ չեն օգտագործվում, ցածր է կերային միավորի ելունքը մեկ հեկտարից, ինչպես անջրդի, այնպես էլ ջրովի հողերից, ցանքի կառուցվածքը կշռադատված չէ: Մոտակա խնդիրը վարելահողերի յուրաքանչյուր հեկտարից ամենուրեք 300—350 ցենտներ եգիպտացորենի սիլոսային զանգվածի, 65—70 ցենտներ բազմամյա խոտի, 400—500 ցենտներ կերի արմատապտղի և 250—300 ցենտներ սիլոսի կերախառնուրդի ստացումն է:

Այժմ, երբ օրակարգում ամբողջ սրությամբ դրված են կերի բարձր որակի հարցերը, կերի առատության գործոնը դադարել է հաջողության միակ չափանիշը լինելուց: Ուստի նախատեսված է մինչև հնգամյակի վերջը բազմամյա խոտաբույսերի ցանքատարածություններն ընդարձակել 44 հազար հեկտարով և դրանց կառուցվածքում լոբազգիների տեսակարար կշիռը հասցնել մինչև 93 տոկոսի: Ընդ որում ջրովի հողերում առավելությունը կտրվի առվույտին, իսկ անջրդիում՝ կորնգանին:

Կոլտնտեսություններն ու սովխոզները կողմնորոշվում են դեպի բազմամյա խոտաբույսերի մշակման ու բերքահավաքի տեխնոլոգիայի կատարելագործման, սպիտակուցներով հարուստ կուլտուրաների խառը ցանքերի ընդարձակումը: Նախատեսվում է հլածուկի (ռապս), շաբդարի, պերկոյի և խաչածաղկավոր այլ կերային կուլտուրաների միջնակա ու կրկնակի ցանքերի երկպատիկ ընդարձակում: Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ կովերի կաթնատվությունը 4000 կգ-ից ավելի բարձրացնելու համար բացի սպիտակուցից պահանջվում է նաև շաքարի հաշվեկշռվածություն: Այդ նպատակով նախատեսվում է եգիպտացորենի սիլոսի պատրաստման և կերային արմատապտուղների ներդրման ծավալների կրկնապատկում:

Թվարկած միջոցառումների իրականացումը 1990 թվականին կապահովի վարելահողերում 869 հազար տոննա կերային միավորից ոչ պակաս կոշտ, հյութալի ու կանաչ կերի և 89,1 հազար տոննա յուրացվելիք պրոտեինի կամ ամեն մի հեկտարից 32 ցենտներ կերային միավորի և 330 կգ պրոտեինի արտադրությունը:

Կերի ստացման մեծ ռեզերվ են բնական արոտներն ու խոտհարքները, որոնք զբաղեցնում են 800 հազար հեկտար տարածություն: Ներկայումս այդ խոտհարքների բերքատվությունը կազմում է հեկտարից միջին հաշվով 19,1 ցենտներ, արոտավայրերի բերքատվությունը՝ 150—600 կերային միավոր, մինչդեռ ռացիոնալ օգտագործելու

դեպքում բնական խոտհարքների հեկտարից կարելի է ստանալ 30—40 ցենտներ խոտ, իսկ մշակովի արոտավայրի հեկտարից՝ 1800—2000 կերամիավոր:

Հանրապետության արոտավայրերի ամենախոցելի տեղը մնում է դրանց կուլտուր-տեխնիկական անբավարար վիճակը: Այդ տարածության գրեթե կեսը այս կամ այն չափով տորրված է, իսկ 43 տոկոսը ողողամաշված: Բնական խոտհարքներում կերարտադրությունը ինտենսիֆիկացնելու նպատակով նախատեսվում է 2—2,5 անգամ մեծացնել խոտի և արոտավայրային կերի բերքը՝ այն հասցնելով մինչև 740 հազար տոննա կերային միավորի, իսկ յուրացվող պրոտեինինը՝ մինչև 86 հազար տոննայի: Այս նպատակով նախատեսված է խոտհարքների 75 հազար հեկտար տարածության վրա կատարել արմատական բարելավում, 50 հազար հեկտար խոտհարքների, 38 հազար հեկտար արոտավայրերի մակերեսային բարելավում և այլ կոմպլեքսային միջոցառումներ: Մարգագետնամելիորատիվ աշխատանքների ողջ համալիրի իրականացման համար նախատեսված է հանրապետությունում կազմակերպել մասնագիտացված մարգագետնաարոտավայրային ձեռնարկություններ, որոնցից առաջինն արդեն գործում է Սիսիանի շրջանում:

Կարևոր պրոբլեմ է կորուստների կրճատումը կերի հավաքման, տեղափոխման, պահպանման և օգտագործման ժամանակ: Պրակտիկան ցույց է տալիս, որ տարբեր պատճառներով թույլ տրված կերի կորուստները մեր հանրապետությունում կազմում են մինչև 20—25 տոկոս: Դա հատկապես աններելի է մեր պայմաններում, երբ յուրաքանչյուր երրորդ տնտեսություն 10 ցենտներից էլ պակաս կերամիավոր է պատրաստում անասունի մեկ պայմանական գլխի համար: Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ այդ կորուստներն անխուսափելի չեն և աշխատանքների ճիշտ կազմակերպման ու կերի հավաքման, կուտակման ու պատրաստման լավագույն տեխնոլոգիայի դեպքում դրանք կարելի է հասցնել նվազագույնի:

Պետագրոարդի համապատասխան ստորաբաժանումների թույլ պահանջկոտությունը մասնագետների հայեցողական, ոչ սկզբունքային, հաճախ պահպանողական դիրքորոշումը հանգեցրել են նրան, որ անցած տարիներին խոտի միայն 1,5 տոկոսն է ենթարկվել ակտիվ օդափոխման, բնական խոտհարքների 25—30 տոկոսն է հնձվել լավագույն ժամկետներում, սիլոսի և սենաժի 13—21 տոկոսն է պատրաստվել կոնսերվանտներով, խոտի միայն 2,5 տոկոսն է պահվել ծածկի տակ: Ստեղծված դրությունը շտկելու համար կարևոր նշանակություն է տրվում կերի կուտակման առաջավոր տեխնոլոգիայի լայն ներդրման և կերի պահպանման նյութատեխնիկական անհրաժեշտ բազայի ստեղծման հարցերին: Մասնավորապես նախատեսված է ակտիվ օդափոխմամբ պատրաստված խոտի ծավալի տասնապատիկ մեծացում՝ մամլված խոտի բաժինը ընդհանուր ծավալում հասցնելով մինչև 84 տոկոսի: Մեկ միլիոն 50 հազար տոննա սիլոսի ընդհանուր ծավալից հնգամյակի վերջին 25 տոկոսը կպատրաստվի կոնսերվանտների ու ազոտ պարունակող հավելումների կիրառումով: Զգալիորեն կմեծանան ջրազրկված կանաչ կերի ու խոտաբուսային ալյուրի ծավալները: Մեծ ուշադրություն կդարձվի ծղոտի սիլոսավորմանը, մամլված ծղոտի պատրաստմանը: Կորուստների ընդհանուր ծավալում մեծ բաժին է ընկնում կերի պահպանման շրջանին: Ընդ որում կերը կորցնում է ոչ միայն իր ֆիզիկական քաշը, այլև, որ ավելի կարևոր է, որակական արժեքները: Մեր գիտնականների ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ձմռան շրջանում պահպանման անբավարար պայմանների պատճառով կերի մեջ պրոտեինի քանակը նվազում է 20—30 տոկոսով: Կերի ճիշտ պահպանման և կորուստների կտրուկ նվազեցման նպատակով ընթացիկ հնգամյակում շահագործման կհանձնվեն սիլոսային և սենաժային կապիտալ կառույցներ: Ընդլայնվում է հացահատիկային փուրաժի, խոտաբուսային ալյուրի, բրիկետված ու հատիկավորված կերի պահեստարանների շինարարությունը: Որոշ աշխատանքներ այս ուղղությամբ կատարվել են արդեն 1986—1987 թվականներին: Մշակված են 100—400 տոննա խոտի պահպանման համար թեթևացված կոնստրուկցիայի ծածկերի փորձնական նմուշներ, որոնց առանձին տարրերի արտադրությունը կազմակերպված է մեր հանրապետությունում: Թեթևությամբ, փոքր նյութատարողությամբ, ցածր ինքնարժեքով է պայմանավորված դրանց բարձր պահանջարկը: Այդ ծածկերի առաջին նմուշներն արդեն կառուցված են Էջմիածնի և Հրազդանի շրջաններում: Միջոցներ են ձեռնարկվում դրանց լայն ներդրման համար հանրապետության բոլոր շրջաններում:

Կամոյի շրջանային ագրոարդյունաբերական միավորման մեքենայացման և էլեկտրիֆիկացման ձեռնարկություններում սկսվել է պարզեցրած կոնստրուկցիայի կամարակապ միօրինականացված կառույցների (մոդուլների) պատրաստումը: Աշխատանքներ են տարվում սիլոսի ու սենաժի պահպանման համար, հավաքովի երկաթբետոնե



կոնստրուկցիաների արտադրությունը յուրացնելու նպատակով:

Կերային բազայի ամրապնդման գործում մեծ է գյուղատնտեսական գիտության դերը: Այդ առումով սկզբունքային նշանակություն ունի «Երկրի ագրոարդյունաբերական համալիրի զարգացման գիտական ապահովումը կատարելագործելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի վերջերս ընդունած որոշումը: Այդ որոշմամբ մասնավորապես անասնապահության և կերարտադրության ասպարեզում խնդիր է դրվում ընդլայնել արտադրության ինտենսիֆիկացման հետազոտությունները, ստեղծել մսի, կաթի և այլ մթերքների արտադրության արդյունավետ տեխնոլոգիաներ, որոնք ապահովեն կերի ռացիոնալ օգտագործում, աշխատանքի ու միջոցների ծախսումների կրճատում: Մշակել անասունների կերակրման այնպիսի համակարգեր, որոնք նպատակամղված լինեն մթերատվության պոտենցիալի լրիվ իրացմանը և հացահատիկի խնայողական ծախսմանը:

Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն նվիրել կերի արտադրության մասնագիտացման և միջտնտեսային կոոպերացման հետագա կատարելագործման ուղղությամբ գիտական հանձնարարականների մշակմանը, կերային կուլտուրաների նոր բարձրբերքատու սորտերի ու հիբրիդների սելեկցիայի գծով տարվող աշխատանքների խորացմանը: Ներկայումս հանրապետությունում կերարտադրությունը կենտրոնացվում և մասնագիտացվում է՝ այն առանձնացվելով որպես ինքնուրույն ճյուղ, տնտհաշվարկային սկզբունքով, տնտեսությունների ու բրիգադների մակարդակով, կերի արտադրության ու վերամշակման միջտնտեսային ձեռնարկությունների արտադրամասերի ցանցի ընդլայնմամբ:

Կերի բազայի ամրապնդման ծրագիրը ինքնանպատակ չէ: Այն ուղղված է հանրապետության անասնապահության հետագա զարգացմանը, մսի ու կաթնամթերքի արտադրության ավելացմանը:

Մեր առաջնակարգ խնդիրն է տեղական ռեսուրսների ի հայտ բերումն ու օգտագործումը, մսի ու կաթի արտադրության ավելացումը: Այս առնչությամբ մշակված են անասնապահության բոլոր ճյուղերի ինտենսիֆիկացման ծրագրեր: Ընթացիկ տարում 12 շրջաններում կազմակերպված են տավարի արտադրության մասնագիտացված բտման տնտեսություններ, որտեղ կկենտրոնացվի յուրաքանչյուր շրջանի ողջ բտվող մատղաշը: Մինչև հնգամյակի վերջը համանման տնտեսություններ կկազմակերպվեն բոլոր շրջաններում: Սելեկցիոն-ցեղային աշխատանքների մակարդակի բարձրացման, հոտի վերարտադրության արմատական բարելավման նպատակով, անասնապահության ու կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտի, ցեղային գործարանների ու տնտեսությունների, արհեստական սերմնավորման ցեղաբուծարանների հիման վրա կազմակերպված է ցեղայնացման գիտաարտադրական միավորում:

Պետագրոարդը միջոցներ է գործադրում անասնապահությունում տիրող վիճակի համար կադրերի պատասխանատվության բարձրացման, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության դաստիարակման, կուսակցական ու պետական կարգապահության ըստ ամենայնի ամրապնդման, բոլոր շրջաններում կերի արտադրության ինտենսիֆիկացման և կերային սպիտակուցի ավելացման ծրագրերի անվերապահ կատարման ուղղությամբ:

Պետագրոարդը միասնական է ու անբաժանելի: Այսպիսի մարմին մեզանում երբեք չի եղել: Նա ինքը պետք է պլանավորի, ինքը կատարի, ինքը պատասխանի: Դրա համար նա ունի բոլոր իրավունքներն ու հնարավորությունները: Մենք պետք է սովորենք արդյունավետորեն օգտագործել դրանք: Դրա ուղին, առաջին հերթին, կառավարման վարչական մեթոդներից վճռական անցումն է տնտեսագիտական մեթոդների: Հարկավոր է ձերբազատել նախաձեռնությունը տեղերում, պայմաններ ստեղծել բոլոր օղակների ղեկավարների, արտադրության անմիջական հրամանատարների ինքնուրույնության համար՝ նրանց հանձնելով ռեալ իշխանության զգալի մասը:

Վերակառուցվելով ընթացքում՝ մենք բոլորս պետք է արդեն այժմ լուծենք այն բոլոր բարդ հարցերը, որոնք առաջադրվեցին ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումներում: Ներկա փուլում բոլոր օբյեկտիվ պայմաններն առկա են, որպեսզի արմատական տեղաշարժ կատարվի մեր կենսագործունեության մեջ: Այդ խնդրի հաջող իրականացումը կդառնա ագրոարդյունաբերության բոլոր աշխատողների գործունեության գնահատման չափանիշը: Եվ այսօր՝ մեծ Հոկտեմբերի 70-ամյակի նախաշեմին, հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում, ագրոարդյունաբերական համալիրի ձեռնարկություններում մեր կադրերը քաղաքական հասունության ու մարտունակության քննություն են հանձնում:

# ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ՝ ԲՈԼՈՐ ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

**Մ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
**ՀԿԿ Վարդենիսի շրջկոմի**
**առաջին քարտուղար**

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐՆ այսօր էլ դեռ գտնվում են այն խոր տպավորության տակ, որ մեզնից յուրաքանչյուրի վրա գործեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը: Եվ դա բացատրվում է ոչ միայն պլենումի նոր եզրահանգումներով ու հարցադրումներով, էկոնոմիկայի կառավարման հետագա կատարելագործմանն ուղղված նրա հիրավի նորարարական որոշումների իրականացման մտահոգությամբ, այլև այն սկզբունքային գնահատականով, որ պլենումում տրվեց Հայաստանի կուսկազմակերպության գործունեությանը:

Կուսակցական անաչառ քննադատությունից ճիշտ հետևություն անելու, գործնական դասեր քաղելու մեր հանրապետական կուսկազմակերպության ունակության համոզիչ վկայությունը եղավ ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը, որը քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում բացահայտեց վերակառուցման ընթացքում անթույլատրելիորեն հապաղելու պատճառները, նշեց ստեղծված իրավիճակից դուրս գալու, երկրի սոցիալ-տնտեսական արագացված ռիթմին համաքայլ ընթանալու կոնկրետ ուղիները:

Հանրապետական կուսկազմակերպության հասցեին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում արված քննադատությունը ամբողջովին վերաբերում է նաև մեր՝ Վարդենիսի շրջանի կուսակցական կազմակերպության, նրա սկզբնական օղակների գործունեությանը: Իրենց աշխատանքի նկատմամբ բարձր պահանջկոտության պայմաններում շրջանի կոմունիստները քննարկեցին պլենումի որոշումները և, ելնելով հանրապետական կուսկազմակերպության հասցեին արված լուրջ քննադատությունից, իրենց ժողովներում գործնական միջոցառումներ մշակեցին թերությունները հաղթահարելու, քաղաքական-կազմակերպական աշխատանքը արդի պահանջների մակարդակին բարձրացնելու համար: Նման մթնոլորտը հատկանշական էր նաև շրջկոմի պլենումին:

Հարկ է նշել, որ անցած հնգամյակում մենք պարզապես անբավարար ենք աշխատել, գործնական միջոցներ չենք ձեռնարկել գյուղատնտեսության վարման կուլտուրան բարձրացնելու, եղած ռեզերվներն ու հնարավորությունները արդյունավետորեն գործադրելու համար: Խնայողաբար չենք օգտագործել հողն ու ոռոգման ջուրը, վատ ենք զբաղվել դաշտավարության ու անասնապահության ինտենսիվացման, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր օղակներում կարգապահությունն ամրապնդելու, սկզբնական կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու, նրանց նկատմամբ պահանջկոտությունն ուժեղացնելու հարցերով: Կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները քննարկել են հանրային արտադրության ու սոցիալական ոլորտի զարգացմանը վերաբերող բազմաթիվ հարցեր, ընդունել համապատասխան որոշումներ, սակայն, ըստ էության, հսկողություն չեն սահմանել դրանց կատարման նկատմամբ, շատ որոշումներ մնացել են թղթի վրա:

Թվարկած և շատ այլ թերություններ բացահայտվեցին դեռևս անցած տարվա դեկտեմբերին մեր շրջկոմի գործունեության վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմում տեղի ունեցած քննարկման ժամանակ: Եվ դեռ այն ժամանակ շրջկոմի ուշադրությունը հրավիրվեց կուսակցության առաջադրած վերակառուցման ու արագացման կուրսի իրականացման գործում ղեկավար կադրերի, կուսկազմակերպությունների պատասխանատվության ու պահանջկոտության բարձրացման, բոլոր ոլորտներում կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման վրա:

Գյուղատնտեսական արտադրության մեջ ստեղծված ծանր վիճակից դուրս գալու, մթերքների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու, արագացման և վերակառուցման պահանջները անշեղորեն կենսագործելու նպատակով մենք մշակեցինք շրջանի էկոնոմիկայի և հասարակական-քաղաքական կյանքի արմատական վերակառուցման միջոցառումների կոնկրետ պլան: Ընդ որում դրանում առաջնահերթ նշանակություն տրվեց կուսակցական, պետական, կատարողական, աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդմանը, գործերի վիճակի համար յուրաքանչյուր կոմունիստի, ղեկավար և միջին օղակի կադրերի, մասնագետների պատասխանատվության ու շահագրգռության բարձրացմանը, ամենուրեք կարգուկանոնի հաստատմանը, փոխադարձ պահանջկոտության ապահովմանը:

Կարգապահությունը լայն հասկացություն է: Այն ընդգրկում է գործունեության բոլոր բնագավառները, աշխատավորական բոլոր խավերը: Չէ որ, ինչպես սովորեցնում է կուսակցությունը, կարգապահության և կարգուկանոնի ամրապնդումը ենթադրում է, որ յուրաքանչյուր աշխատող, լինի շարքային մասնագետ, թե ղեկավար, իրեն վստահված գործը պետք է կատարի ազնվորեն, բարեխղճորեն, ինչպես ասում են, տիրոջ սրտացավությամբ, առանց ջանք ու եռանդ խնայելու, այն հաշվով, որ ներդրած միջոցները արագ ու շատ հատույց տան, ապահովեն բարձր վերջնարդյունքներ: Այլ խոսքով, ամեն ոք պետք է իմանա իր անելիքը, պարտականությունը և դրանք անի խղճի մտոք:

Կուսակցությունն այսպես է դնում հարցը, և մենք ջանում ենք գտնվել այդ պահանջների բարձրության վրա: Աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի վկայությունը ընթացիկ հնգամյակի անցած ժամանակաշրջանում ձեռք բերած արդյունքներն են: Շրջանը բոլոր ցուցանիշներով կատարեց 1986 թ. և ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանային առաջադրանքները: Հատկանշական է, որ հետզհետե ավելանում են այն սկզբնական կուսկազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների թիվը, որոնց համար բնորոշ են դառնում գործերի վիճակի օբյեկտիվ, ինքնաքննադատական գնահատականը, տնտեսական, կազմակերպչական և գաղափարախոսական աշխատանքի նոր մեթոդների համարձակ որոնումն ու կիրառումը:

Կուսակցության առաջադրած պահանջների ոգով գործելու օրինակ են տալիս մասնավորապես Ակունքի կոլտնտեսության ղեկավարությունը, կուսկազմակերպությունը: ՍՄԿԿ XXVII համագումարից անմիջապես հետո սկզբնական կուսկազմակերպության ժողովը քննարկեց վերակառուցման կուրսի իրականացման ասպարեզում կազմակերպության խնդիրները և հաստատեց դրանց կենսագործման կազմակերպչական, գաղափարադաստիարակչական աշխատանքի միջոցառումների պլան, որտեղ կոնկրետացված են կոլտնտեսության վարչության, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների հիմնական անելիքները:

Ելակետ ունենալով կուսակցության արդի պահանջները՝ կոլտնտեսության կուսկազմակերպությունը ոչ թե խոսքով, այլ գործով ձեռնամուխ եղավ նոր ձևով մտածելու և գործելու համար կոմունիստների հոգեբանական վերակառուցմանը: Չնայած դժվարությամբ, բայց և այնպես աստիճանաբար ամրապնդվեց կուսժողովներում կոլտնտեսության նախագահի, գլխավոր մասնագետների, միջին օղակի կադրերի հաշվետվությունները ունկնդրելու, քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում գործերի ռեալ վիճակին օբյեկտիվ գնահատական տալու, թերությունները համարձակորեն բացահայտելու և վերացնելու համար մարդկանց նախաձեռնությունը զարգացնելու պրակտիկան:

Վերակառուցման հիմնական գրավականը համարելով մարդկային գործոնի դերի բարձրացումը, ամենուրեք կարգուկանոնի ամրապնդումը՝ կուսկազմակերպությունն անցած ժամանակաշրջանում առանձնահատուկ ուշադրություն նվիրեց կոմունիստների, կոլտնտեսականների հետ տարվող անհատական, տարբերակված աշխատանքին, այն բանին, որպեսզի յուրաքանչյուր ոք խորությամբ ընկալի տնտհաշվարկի, բրիգադային և ընտանեկան կապալի էությունն ու հսկայական առավելությունները շահութաբեր աշխատանքի, ներդրված միջոցների հատույցն ապահովելու, վերջնական բարձր արդյունքներ ձեռք բերելու գործում:

Կուսակցության ներկա պահանջներից բխող նման միջոցառումների շնորհիվ բարենպաստ պայմաններ ստեղծվեցին կադրերի հոգեբանական վերակառուցման, նրանց անձնական պատասխանատվության բարձրացման համար: Այսօր կոլտնտեսության նախագահ Գ. Յավրյանը, կուսբյուրոյի քարտուղար Ռ. Մկրտչյանը, մասնագետները ու արտադրական ճյուղերի ղեկավարները աշխատում են համագործակցված ու համերաշխորեն, շահագրգռություն են հանդես բերում տնտհաշվարկի և կապալային աշխատանքի ամրապնդման, եղած միջոցները խնայողաբար օգտագործելու, դրանցից ավելի մեծ հատույց ապահովելու գործում: Եվ, ամենագլխավորը, այստեղ իրոք էապես ամրապնդվել է աշխատանքային և կատարողական կարգապահությունը, բոլոր օղակներում հաստատվել է անհրաժեշտ կարգուկանոն, ստեղծվել բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ: Փոխադարձ պահանջկոտությունը դարձել է գործունեության նորմ: Եվ բնավ զարմանալի չէ, որ ակունքցիները գերակատարեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի 1986 թ. պլանները ու սոցպարտավորությունները: Տնտեսությունը տարին փակեց 197 հազար ռուբլու օգուտով և հաստատուն նախադրյալներ ստեղծեց ընթացիկ տարվա արդյունավետ աշխատանքի համար:

Այսօր մենք առանձին գոհունակությամբ ենք խոսում այն մասին, որ ակունքցիները չհանգստացան ձեռքբերածով, այլ մոբիլիզացրին բոլոր ուժերը ընթացիկ տարվա բնակլիմայական աննախադեպ դժվարությունները հաղթահարելու, գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների ավելացման դրական միտումները ամրապնդելու համար: Տնտեսությունը կաթի արտադրության առաջին կիսամյակի պլանը կատարել է 109,8, մսի վաճառքինը՝ 106,7 տոկոսով: Գերակատարվել են մատղաշի ստացման առաջադրանքները: Կազմակերպված են անցնում կերի կուտակումն ու հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը:

Ակունքի օրինակը եզակի չէ: Պրակտիկան ցույց է տալիս, որ այնտեղ, ուր աշխատանքի հիմքում դրվում են ինտենսիվ գործոնները, արտադրության կազմակերպման նոր մոտեցումները, արդյունքներն էլ չեն հապաղում ի հայտ գալ: Այդ իրողության վկայությունը կարող է տալ նաև Լճավանի պետական տնտեսությունը (դիրեկտոր՝ Ա. Գրիգորյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Գ. Խաչատրյան): Այստեղ լուրջ քննություն է բռնել խոշոր եղջերավոր անասունների մատղաշի ինտենսիվ բտման եղանակը: Մթերակայան հանձնած կենդանիների միջին կենդանի քաշը հասցվել է 416 կիլոգրամի: Միայն ընթացիկ տարվա առաջին եռամսյակում անասնապահությունից ստացվել է 75.500 ռուբլու դրամական եկամուտ, որից 55.700 ռուբլին կազմում է հավելավճարը:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում ըստ ամենայնի արժեքավորվեց տնտեսական հաշվարկի և կապալային աշխատանքի լավագույն փորձը, խնդիր դրվեց դրանք լայնորեն արմատավորել արտադրական բոլոր օղակներում: Անդրադառնալով պարենային պրոբլեմին՝ ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց, որ գյուղում տնտեսական կյանքի աշխուժացումը հնարավոր դարձավ տնտեսավարման մեթոդների փոփոխման, նախ և առաջ լրիվ տնտհաշվարկի, կոլեկտիվ և ընտանեկան կապալի արմատավորման շնորհիվ: Այդ իրողության ցայտուն օրինակներ կան նաև մեր շրջանում: Ընթացիկ տարվա հունվարի 1-ի դրությամբ դաշտավարների 49,2, անասնապահների 24 տոկոսն աշխատում էր կապալային եղանակով: Հատկապես ուսանելի փորձ է կուտակվել Նորակերտի և Մեծ Մազրայի տնտեսություններում, որոնք լրիվին անցել են տնտհաշվարկի, կոլեկտիվ և ընտանեկան կապալի: Նրանց փորձի ուսումնասիրությանն էր նվիրված Նորակերտում տեղի ունեցած գիտագործնական սեմինար-խորհրդակցությունը:

Որ տնտհաշվարկը և կապալային աշխատանքը հանրային արտադրության արդյունավետության բարձրացման լավ միջոց են, կարելի է հիմնավորել հետևյալ օրինակով: Նորակերտի և Փոքր Մազրայի տնտեսությունները տառացիորեն ունեն միևնույն բնակլիմայական պայմանները, հողի և ջրի ռեսուրսները: Բայց ահա Նորակերտի սովխոզում (դիրեկտոր՝ Հ. Ավետիսյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Ա. Եղիազարյան) հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարից կազմել է 45,4, իսկ Փ. Մազրայում՝ 28 ցենտներ: Նույն տարբերությունը առկա է նաև ցանովի մնացած կուլտուրաների բերքատվության արդյունքներում:

Կան ուրիշ օրինակներ: Ծովակի կոլտնտեսության Կ. Հակոբյանի ղեկավարած կապալային բրիգադը կերի ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 500 ցենտներ, բերք կամ նախորդ տարվա համեմատությամբ կրկնակի ավելի: Ընդ որում մեկ ցենտների ինքնարժեքը 8 ռուբլուց իջավ 2 ռ. 80 կոպեկի, յուրաքանչյուր աշխատողի աշխատավարձն ավելացավ մոտ 170 ռուբլով: Նույնը և Ակունքի կոլտնտեսությունում: Մինչդեռ Սովետակերտի, Փ. Մազրայի, Գյոլի, Դաշքենդի տնտեսություններում, նրանց ղեկավարների և մասնագետների մեղքով, հեկտարի միջին բերքատվությունը տատանվում էր 19—90 ցենտների սահմաններում, իսկ ինքնարժեքը խիստ բարձր էր:



Անասնապահությունում ևս բրիգադային, ընտանեկան և անհատական կապալն իրեն արդարացրել է: Կարճաղբյուրի տնտեսության անասնապահ Կ. Գասպարյանը ընտանեկան կապալով տարեկան խնամում է 40 գլուխ տավարի մատղաշ: Այս տարի դրանց օրական քաշաճը նա հասցրել է 850—900 գրամի և մթերակայան հանձնել 380—400 կգ կենդանի քաշով: Շահել են և՛ տնտեսությունը, և՛ ինքը: Արտադրված մսի ինքնարժեքն իջել է 20 տոկոսով, իսկ անասնապահի աշխատավարձը կազմել 280 ռուբլի: Շիշկայայի տնտեսության կթվորուհի Սեդա Սոլբաթովան իր խնամքին հանձնված 19 կովից ստացել է նույնքան հորթ և վեց ամսում ամեն մեկից 1650 կգ կաթ: Կովերը կթում է Սոլբաթովան, կերակրում են ամուսինն ու երեխաները: Նարիմանլուի տնտեսությանը հովիվ Օ. Յուսուբովը կապալային եղանակով խնամած 360 գլուխ մայր ոչխարից ստացել է 367 գառ, ամեն մեկից 2,7 կգ բուրդ՝ նախատեսված 2,3-ի փոխարեն: Նախորդ տարվա համեմատությամբ նույն գլխաքանակից ավելի է ստացել 144 կգ բուրդ և 3,6 տոննա կաթ: Ամսական միջին աշխատավարձն էլ ավելացել է 70 ռուբլով և կազմել 250 ռուբլի:

Նման օրինակներ կարելի է էլի թվարկել առաջավոր տնտեսություններից: Դրանք, իրոք, աշխատանքի ճիշտ կազմակերպման, հատկացրած միջոցները խնայողաբար, տիրոջ սրտացավությամբ օգտագործելու, ամուր կարգապահության ու կարգուկանոնի արգասիք են:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում մեկ անգամ ևս շեշտվեց սկզբնական կուսկազմակերպությունների կարևոր դերը վերակառուցման ու արագացման կուրսից բխող խնդիրների լուծման գործում:

ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան (1987 թ.) պլենումից հետո սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ անցկացված անհատական զրույցները մեզ բերեցին այն համոզման, որ բնավ ոչ ամեն տեղ հստակ պատկերացում ունեն վերակառուցման, տնտհաշվարկի, կապալի էության, դրանց արմատավորման անհրաժեշտության և առավելությունների մասին, որ առանձին կուսկազմակերպություններ, աշխատավորական կոլեկտիվներ կարգապահության, կարգուկանոնի ամրապնդումը, անտնտեսվարության, թափթփվածության, անտարբեր, անհոգի աշխատանքի դեմ պայքարը չեն համարում իրենց գործը: Ելնելով այդ իրողությունից՝ անցկացրինք սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինար խորհրդակցություն, որտեղ լուրջ խոսակցություն ծավալվեց վերակառուցման, տնտեսական, սովետական մարմինների, հասարակական կազմակերպությունների քաղաքական ղեկավարման կատարելագործման, կարգապահության ամրապնդման համար սկզբնական կուսկազմակերպությունների անելիքների շուրջը: Իրավիճակն աստիճանաբար փոխվում է. բարելավվել է քարտուղարների հետ տարվող անհատական աշխատանքը, նվազել է տեղերից պահանջվող ինֆորմացիաների, շրջկոմում հրավիրվող խորհրդակցությունների թիվը:

ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարները, Կենտկոմի հունվարյան և հունիսյան պլենումները ամենուրեք կարգապահությունն ու կարգուկանոնն ամրապնդելու գործում կարևորեցին կադրերի դերը և նրանց հետ տարվող կոնկրետ աշխատանքը: Ելակետ ունենալով կուսակցության նոր պահանջները՝ կուսշրջկոմը վերակառուցում է կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործը: Պրակտիկայում աստիճանաբար արմատավորվում է ղեկավար և միջին օղակի կադրերի ընտրովիության սկզբունքը: Ահա մի քանի օրինակ: Շրջկենտրոնի № 1 երաժշտական դպրոցում ընկել էր աշխատանքային կարգապահությունը, որի հետևանքով ստեղծվել էր անառողջ մթնոլորտ: Կոլեկտիվի ընդհանուր ժողովը անբավարար գնահատեց դիրեկտոր Վ. Մանուկյանի աշխատանքը և նոր դիրեկտոր ընտրեց Երևանի Կոմիտասի անվան կոնսերվատորիայի շրջանավարտ, անկուսակցական Հ. Սահակյանին: Այսօր արդեն այստեղ գործերի վիճակը շտկվում է:

տեղամասը անցած տարի ձախողեցին Սովետականում, Ծովակում, Լուսակունքում, Կարմրաղբյուրում կառուցվող բնակելի տների շինարարությունը:

Ինչ խոսք, այսօր կուսկազմակերպությունները ավելի մեծ ակտիվություն ու նախաձեռնություն են հանդես բերում տնտեսությունների իրավիճակը պարզելու, թերությունները ու թերացումները ջրի երես հանելու գործում, սկզբունքային դիրքերից են արժեքավորում կադրերի գործունեությունը: Սակայն կուսակցական ժողովներում հունիսյան պլենումի լույսով ընթացիկ տարվա անցած ժամանակաշրջանի սոցիալ-տնտեսական զարգացման արդյունքների, բոլոր օղակներում կարգապահության ամրապնդման նպատակով տարվող աշխատանքի քննարկումը միաժամանակ ցույց տվեց, որ շրջանի առանձին սկզբնական կուսկազմակերպություններում դեռևս չի հաղթահարվել ղեկավարին քննադատելը շրջանցելու, նրան կուսակցական տույժի ենթարկելուց ձեռնպահ մնալու, այն վերադաս կազմակերպությունների գործը համարելու լիբերալ հոգեբանությունը: Այսպես, Փ. Մազրայի կուսկազմակերպության (քարտուղար՝ Վ. Վալին) դռնբաց ժողովում կոմունիստները վեր հանեցին արտադրության զարգացումն արգելակող թերությունները, նշեցին, որ տնտեսությունում անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ, կրճատվել է խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, նվազել են կաթի ու մսի արտադրության ու պետական վաճառքի ծավալները:

Բայց ու՞մ մեղքով է տնտեսությունը կանգնել նման վիճակի առաջ. անվանական ոչ մի քննադատություն: Ժողովը բավարարվել է կոլտնտեսության նախագահ, ՍՄԿԿ անդամ Թ. Մուրադովի վատ աշխատանքը արձանագրելով և ոչ մի խոսք չի ասել կուսքարտուղարի, մասնագետների, ճյուղերի ղեկավարների գործելակերպի մասին:

ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը (1987 թ.) բացահայտեց վերակառուցման և արագացման գործում տեղ գտած լուրջ թերությունները: Այդ ամենից գործնական լուրջ հետևություններ են անում նաև մեր շրջանի կոմունիստները: Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները ամեն ինչ կանեն վերակառուցման ու արագացման կուրսից բխող խնդիրները անշեղորեն լուծելու համար:

---

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԳՈՐԾԻՔԸ

**Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
**Երևանի պետական համալսարանի գիտական աշխատանքի գծով պրոռեկտոր, սովետական սոցիոլոգիական ասոցիացիայի հայկական բաժանմունքի նախագահ, պրոֆեսոր**

ՍՄԿԿ **XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ** սահմանեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու և սովետական հասարակության՝ որակապես նոր վիճակի հասնելու գիտականորեն հիմնավորված ստրատեգիան: Համագումարը նշեց, որ արագացման կարևորագույն երաշխիքը վերակառուցման անցկացումն է հասարակական կենսագործունեության բոլոր ոլորտներում: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումը խորապես վերլուծեց արագացման և վերակառուցման ստրատեգիայի փոխադարձ կապը, նշեց նրա իրագործման կոնկրետ ուղիները: Կուսակցության նախանշած պատմական խնդիրների հաջող լուծման գործում մեծ դեր է հատկացվում հասարակական գիտություններին: «Վերակառուցում,— պլենումում նշեց **Մ. Ս. Գորբաչովը**,— նշանակում է վճռական շրջադարձ կատարել դեպի գիտություն, նրա հետ պրակտիկայի գործարար պարտնյորություն՝ վերջնական բարձր արդյունքների հասնելու նպատակով, ամեն մի նախաձեռնություն գիտական պատկառելի հիմքի վրա դնելու ունակություն, հասարակության նորացման կուսակցության կուրսը ակտիվորեն պաշտպանելու գիտնականների պատրաստակամություն ու ջերմ ցանկություն...»:

Հասարակական գիտությունների նկատմամբ արդի պահանջների լույսի ներքո առանձնապես մեծանում է սոցիոլոգիայի դերը, որը կոչված է ուսումնասիրելու տեղի ունեցող կոնկրետ և խորքային պրոցեսները հասարակության կյանքի բոլոր ոլորտներում և բոլոր մակարդակներում, գիտականորեն հիմնավորված հանձնարարականներ մշակելու աշխատավորական կոլեկտիվների, ղեկավարման ու կառավարման բոլոր մարմինների գործունեության արդյունավետությունը բարձրացնելու համար:

Վերակառուցման և արագացման՝ կուսակցության կանխագծած ստրատեգիական խնդիրների կատարման ուղղությամբ որոշակի աշխատանք են կատարում սովետական սոցիոլոգիական ասոցիացիան (ՍՍԱ) և նրա ռեգիոնալ բաժանմունքները: ՍՍԱ-ի հայկական բաժանմունքն ստեղծվել է 1984 թ. հունիսին: Նրա կազմի մեջ մտնում են 40 կոլեկտիվ և 150 անհատական անդամներ:

Ասոցիացիայի, որպես հասարակական կազմակերպության, աշխատանքը տեղի է ունենում նախ և առաջ համապատասխան սեկցիաների միջոցով, ուստի ամենօրյա աշխատանքում առանձնակի ուշադրություն է դարձվում դրանց գործունեության ակտիվացմանը: Սեկցիաները ըստ կարելվույն փոխհամաձայնեցնում են հանրապետությունում կատարվող սոցիոլոգիական հետազոտությունները, պարբերաբար անցկացնում հարցաթերթիկների գիտամեթոդական փորձաքննություն, իրենց անդամներին տեղեկացնում են սոցիոլոգիական գրականության նորույթների մասին, կոլեկտիվներին մեթոդական օգնություն են ցույց տալիս սոցիոլոգիական ուսումնասիրությունների անցկացման գործում:

Վերջին երկու տարում կատարվել է ութ մեծածավալ ուսումնասիրություն: ՍՍԱ-ի հայկական բաժանմունքի գիտահետազոտական սեկցիաների մեջ մտնող ձեռնարկությունների ու հիմնարկների սոցիոլոգիական ծառայությունների ուժերով կազմակերպվել է ևս 4 լոկալ ուսումնասիրություն: Առավել նշանակալիների թվում հարկ է նշել «Լույս» արտադրամիավորման լայնամասշտաբ տնտեսափորձի, երիտասարդների պրոֆկողմնորոշման բազմափուլ ուսումնասիրման, ուսանողների ապրելակերպի, երիտասարդ ընտանիքների, ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության

թատրոնի պրոբլեմների, մամուլի մասին հասարակական կարծիքի ուսումնասիրման, հանրապետությունում տարվող աթեիստական աշխատանքի վիճակի և այլ հետազոտությունները: Առաջին հետազոտությունները նվիրված են վերակառուցման և երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման՝ կուսակցության ստրատեգիական կուրսի իրականացման պրոցեսի ուսումնասիրմանը:

Վերջին ժամանակներս որակյալ սոցիոլոգիական հետազոտություններ են իրականացվում ոչ միայն Երևանում, այլև Լենինականում, Կիրովականում, Էջմիածնում, Հրազդանում, Հոկտեմբերյանում և հանրապետության այլ քաղաքներում ու շրջաններում: Հետազոտությունների արդյունքներն ընդհանրացված ձևով ներկայացվել են հաշվետու-ընտրական ժողովի գիտական նստաշրջանում, համամիութենական և հանրապետական խորհրդակցություններում, կուսակցական և կոմերիտական ակտիվներում: Սոցիոլոգիական հետազոտությունների արդյունքների վերաբերյալ նյութերի մի մասը նախապատրաստվել է հրատարակման Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի տարեգրքում և Երևանի պետական համալսարանում՝ միջբուհական ժողովածուում, ինչպես նաև հաշվետու-ընտրական կոնֆերանսի ինֆորմացիոն ժողովածուում: Անցած ժամանակաշրջանում մեր սոցիոլոգները մենագրություններ, գրքույկներ և հոդվածներ են հրապարակել միութենական և հանրապետական մամուլում:

Անցկացվող հետազոտությունների արդյունավետության տեսակետից առավել էականն այն է, որ հետազոտությունների արդյունքների վերաբերյալ զեկուցագրեր են պատրաստվել՝ ուղղված կուսակցական և սովետական մարմիններին, և դրանց հիման վրա համապատասխան հարցերը քննարկվել են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմների նիստերում, աշխատավորական կոլեկտիվներում: Դրական է նաև միավորումներում սոցիոլոգների անմիջական կոնսուլտացիաների պրակտիկայի ընդլայնումը:

ՍՍԱ.-ի հայկական բաժանմունքի գործունեությունը, ամբողջությամբ վերցրած, հետզհետե ավելի է ակտիվանում և դառնում նպատակայաց:

Սոցիոլոգիական ծառայության կազմակերպման ու զարգացման գործում տեղ գտած այն թերություններն ու չլուծված հարցերը, որոնց մասին խոսվեց սովետական սոցիոլոգիական ասոցիացիայի վերջերս կայացած կոնֆերանսում, վերաբերում են նաև մեր աշխատանքին: Սոցիոլոգիական աշխատանքի ներկայիս վիճակը չի համապատասխանում այն խնդիրների մակարդակին, որ դնում են կուսակցությունն ու կառավարությունը երկրի տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման բնագավառում: Սոցիոլոգիական հետազոտությունների տեսությունն ու պրակտիկան զգալիորեն հետ են մնում ժամանակի պահանջներից, դրանք դեռևս չեն բավարարում կառավարման պահանջմունքները լիակատար և արժանահավատ ինֆորմացիայի բնագավառում, տառապում են էմպիրիզմով, միշտ չէ, որ անցկացվում են գիտամեթոդական բարձր մակարդակով, սովորաբար շրջանցում են սուր անկյունները: Ժողովրդական տնտեսության ճյուղերում զբաղված սոցիոլոգների մեծ մասը պրոֆեսիոնալ չէ և միևնույն ժամանակ հնարավորություն չունի վերապատրաստվելու երկրի կենտրոնական ուսումնական հաստատություններում:

Էլեկտրոնային հաշվիչ մեքենաների առավել տարածված տիպերի համար բացակայում է սոցիոլոգիական ինֆորմացիայի վերլուծության ստանդարտ ծրագրերի, տվյալների ու մեթոդիկաների միասնական բանկը: Սոցիոլոգների աշխատանքը խիստ բարդացնում են սոցիոլոգիական վիճակագրության տվյալներ ստանալու գործում մինչև վերջերս գոյություն ունեցած սահմանափակումները: Սոցիոլոգիան իր հնարավորությունների լիակատար չափով կծառայի՞, արդյոք, վերակառուցման և արագացման ստրատեգիայի իրականացմանը: Այս հարցի պատասխանը շատ բանով կախված է նրանից, թե որքան արագորեն կարող է հաղթահարվել կառավարման շատ մարմինների դեռևս շարունակվող «անբարեհամբույր» վերաբերմունքը սոցիոլոգիական գիտության և տեղերում սոցիոլոգիական ծառայության կազմակերպման նկատմամբ: ՍՄԿԿ XXVII համագումարը և կուսակցության Կենտկոմի հետհամագումարյան որոշումները կոչ արեցին հաղթահարել որոշակի նահանջը սոցիալիզմի մարքս-լենինյան ըմբռնումից, ապահովել նրա արագացված համաչափ զարգացումը հօգուտ հասարակության և յուրաքանչյուր անդամի: Օրվա հրամայականն է օբյեկտիվորեն անհնարին դարձնել այն բացասական և սոցիալիզմի սկզբունքներին անհարիր երևույթների կրկնությունը, որոնք տեղ էին գտել անհատի պաշտամունքի, վոլյունտարիզմի ու սուբյեկտիվիզմի տարիներին:



Մեր հասարակության կյանքում նման երևույթներ ծնած հիմնական պատճառներից մեկը կադրերի պատրաստման, դաստիարակման և տեղաբաշխման լենինյան սկզբունքների խախտումն է: Հայտնի են բազմաթիվ օրինակներ, երբ ղեկավար պաշտոններում մարդիկ նշանակվում էին ազգակցական, բարեկամական և նման այլ նկատառումներով, մարդիկ, որոնք կառավարման դպրոց չէին անցել ստորին օղակներում: Լինում էր ավելի վատ, երբ որոշակի ոլորտի ղեկավարումը հանձնարարվում էր համապատասխան կրթություն չունեցող կամ տվյալ բնագավառում անձեռնհաս, ոչ իրավասու անձանց: Պարզ է, որ նման «ղեկավարները» չեն դիմանում ժամանակի քննությանը, ուստի և չեն համապատասխանում կուսակցության արդի կուրսի պահանջներին: Չի կարելի հաշտվել տասնամյակներ շարունակվող այնպիսի վիճակի հետ, երբ հարյուրավոր և հազարավոր ինժեներներ, գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, ուսուցիչներ և այլ մասնագետներ աշխատում են ոչ իրենց մասնագիտությամբ, և դա այն դեպքում, երբ հանրապետության շրջաններում ու քաղաքներում այդ մասնագետների սուր կարիք է զգացվում:

Անցյալի կադրային քաղաքականության նման տարօրինակությունները հաղթահարվում են ՍՄԿԿ XXVII համագումարի, կուսակցության Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումի պահանջների լույսով, որոնց հաջող իրականացումն զգալի չափով կապված է սոցիոլոգների գործունեության ակտիվացման հետ: Այսպես, օրինակ, սոցիոլոգների գործունեության համար կարևոր և օրախնդիր ոլորտ է բացվում կուսակցական և սովետական մարմինների, արտադրական կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների ղեկավարներին (մի քանի թեկնածուներից մեկին) ընտրելու սկսված լայն պրոցեսի կապակցությամբ: Միայն կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունների միջոցով է հնարավոր պարզել կադրային հարցերում օբյեկտիվ հասարակական կարծիքը և կանխել դեմոկրատիայի վերածումը տարերայնության ու անարխիայի:

Կադրային պրոբլեմը վերակառուցման ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասերից մեկն է միայն, և այդ ստրատեգիայի իրականացմանը անմիջականորեն պետք է մասնակցեն սոցիոլոգիական գիտությունը և կիրառական սոցիոլոգիան: Երկրում տեղի է ունենում հասարակական հարաբերությունների ամբողջ համակարգի վերակառուցում: Ինչ աստիճանի կլինի սոցիոլոգների մասնակցությունն այդ պրոցեսին և ինչպիսին կլինի սոցիոլոգիայի, որպես գիտության, ապագա ստատուսը՝ այս հարցերի պատասխանը մեծապես պայմանավորված է այսօր սոցիոլոգիայի առջև ծառացած պրոբլեմների հաջող լուծումով:

Անշուշտ, պրոբլեմներից կարևորագույնը սոցիոլոգների՝ այսօրվա չափանիշներով ոչ բավականաչափ ակտիվությունն է: Մինչև վերջին ժամանակներս սոցիոլոգիան սահմանափակվում էր արդեն ընդունված կուսակցական որոշումները կըրկնելով, պարզաբանելով և դրանց հավանություն տալով: Էմպիրիկ արդյունքները հաճախ հարմարեցվում էին առկա հիմնադրույթներին, ցանկալին ներկայացվում էր որպես իրողություն: Մինչդեռ սոցիոլոգիան, ինչպես հասարակական մյուս գիտությունները, պետք է ընթանա սոցիալական պրոցեսների դիալեկտիկայի իմաստավորման ավանգարդում, իր բովանդակությամբ և պրոֆեսիոնալ արժեքներով այն կոչված է ապահովելու հասարակության գիտական կազմակերպումն ու գործառությունը, լինել երաշխավորն այն բանի, որ կանխվեն սոցիալիզմի առաջընթաց զարգացումն արգելակող լճացման, բյուրոկրատիայի և բացասական այլ երևույթները: Առանց ակտիվ քաղաքացիական դիրքորոշման, առանց կուսակցության հիմնադրույթների կենսագործման համար թեժ պայքար մղելու պատասխանատվության սոցիոլոգն անելիք չունի:

Մեր կարծիքով, սոցիոլոգիայի հրատապ և առաջնահերթ խնդիրներից մեկը վերակառուցումն իրականացնելու մեխանիզմի առարկայական հետազոտումն է: Իսկ սա ենթադրում է անվերապահորեն հաշվի առնելով հասարակական կարծիքը կառավարման համապատասխան մարմինների գործունեության մասին՝ կատարել կոմպլեքս ուսումնասիրություն, որի նպատակն է ի հայտ բերել կոլեկտիվի, ռեգիոնի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելուն նպաստող կամ այն արգելակող գործոնները:

Արագացման ստրատեգիայի հաջող իրականացումն անհնարին է առանց արմատական վերակառուցման՝ սկսած յուրաքանչյուր աշխատատեղում աշխատանքի տարրական կազմակերպումից, բոլոր մակարդակներում կառավարման կուլտուրայից՝ մինչև «յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի»

սոցիալիզմի հիմնական սկզբունքի լիակատար և անվերապահ պահպանման հաստատ երաշխիքների ստեղծումը: Հասկանալի է, որ բոլոր ոլորտներում տեղի ունեցող փոփոխությունների կոնկրետ հետազոտումը և գիտական հանձնարարականների մշակումը պետք է լինեն սոցիոլոգների ուշադրության կենտրոնում:

ՍՄԿԿ XXVII համագումարի և կուսակցության Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումի պահանջների լույսով երկրի սոցիոլոգների հիմնական խնդիրները ընդհանրացված ձևով սահմանված են սովետական սոցիոլոգիական ասոցիացիայի հաշվետու-ընտրական կոնֆերանսի որոշման մեջ, որտեղ երկրի սոցիոլոգիական կենտրոններին հանձնարարվում է ուշադրությունը կենտրոնացնել հետազոտությունների այնպիսի առաջնային ուղղությունների վրա, ինչպիսին է սոցիալիստական հասարակության կառավարման, մարդկային գործոնի ակտիվացման և սոցիալական անտարբերության հաղթահարման, սոցիալական արդարության սկզբունքի իրականացման, սոցիալիստական ինքնակառավարման և դեմոկրատիայի զարգացման ուղիների հիմնավորման սոցիալ-փիլիսոփայական և տնտեսասոցիոլոգիական ամբողջական համադրույթի ստեղծումը: Առանձնակի նշանակություն ունեն տնտեսական մեխանիզմի կոմպլեքսային բարենորոգման սոցիալական ասպեկտների հետազոտությունները:

Սոցիոլոգիական գիտության և կոնկրետ հետազոտությունների գլխավոր նպատակը պետք է լինի այնպիսի կարևոր հարցերի գիտական հիմնավորումը, ինչպիսիք են կառավարման և կառավարչական ապարատի հիմնական օղակների օպտիմալ վերակառուցումը. տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման լայն արմատավորման պայմաններում ցենտրալիզմի և տեղական մարմինների ու աշխատավորական կոլեկտիվների ինքնուրույնությունը զուգակցելու ռացիոնալ պայմանները. հասարակական, կոլեկտիվ, անձնական շահերի ներդաշնակ զուգակցումը. անհատական աշխատանքային գործունեության ընդլայնման սոցիալ-տնտեսական, քաղաքական և հոգեբանական ասպեկտները և այլն:

Հասկանալի է, որ վերակառուցման և արագացման ստրատեգիայի հարցերի կոմպլեքսի ուսումնասիրությունները յուրաքանչյուր հանրապետությունում և երկրի առանձին ռեգիոններում պետք է անցկացվեն՝ հաշվի առնելով կոնկրետ պայմանները: Մեր հանրապետության համար հատկապես հրատապ են նաև լեռնային շրջանների և գյուղական երիտասարդության արտահոսքի պրոբլեմները, ինչպես նաև աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, ժողովրդական տնտեսության պրոֆեսիոնալ կառուցվածքն ու պահանջմունքները հաշվի առնելով՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ կադրերի պատրաստման, էկոլոգիայի, ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակության, ազգային ավանդույթների և անցյալի վերապրուկների դիալեկտիկայի, ազգային արհեստների ավանդույթների օգտագործմամբ անհատական աշխատանքային գործունեության օպտիմալ ձևերի կազմակերպման և այլ հարցերը:

Ինչ խոսք, սոցիոլոգների գործունեությունը չի կարող սահմանափակվել վերոհիշյալ ոլորտներում հետազոտությունների անցկացմամբ և դրանց արդյունքների վերաբերյալ հաշվետվությունների թողարկմամբ: Վերակառուցման պայմաններում ոչ պակաս կարևոր խնդիր է պրակտիկայում գիտականորեն հիմնավորված հանձնարարականների արմատավորման ընթացքի նկատմամբ մշտական սոցիոլոգիական վերահսկողության կազմակերպումը: Սոցիոլոգիական հետազոտությունների հանձնարարականների իրացման գործուն միջոց կարող է ծառայել դասախոսական պրոպագանդան: Լուրջ բարելավման կարիք են զգում ՍՍԱ-ի հայկական բաժանմունքի կապերը հանրապետության «Գիտելիք» ընկերության կազմակերպությունների հետ:

Հասկանալի է, որ սոցիոլոգների կողմից քննարկվող խնդիրների կատարման պարտադիր պայմաններից մեկը մինիստրություններում, գերատեսչություններում և աշխատավորական կոլեկտիվներում սոցիոլոգիական ծառայության լայն ցանցի ստեղծումն է: Ավելի քան մեկ տարի է անցել, երբ ընդունվեց «Ժողովրդական տնտեսության ճյուղերում սոցիոլոգիական աշխատանքի կազմակերպումը բարելավելու և ձեռնարկության կազմակերպության, մինիստրության սոցիալական զարգացման ծառայության վերաբերյալ տիպային կանոնադրությունը հաստատելու մասին» ՍՍՀՄ աշխատանքի և սոցիալական հարցերի պետական կոմիտեի, ՍՍՀՄ ԳԱ նախագահության և ՀԱՄԿԽ-ի քարտուղարության որոշումը: Այս որոշմամբ մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարվեց ստեղծել սոցիալական զարգացման ծառայություններ՝ ներառյալ իրենց կենտրոնական ապարատներում, ճյուղային (գերատեսչական) գիտահետազոտական հիմնարկներում (տվյալ աշխատանքի գիտամեթոդական ապահովման համար), արտադրական և գիտաարտադրական միավորումներում, ձեռնարկություններում ու կազմակերպություններում գործող համապատասխան ստորաբաժանումները: Ավելին, որոշման մեջ հստակորեն սահմանված է. հաստիքների ցուցակներում նախատեսել սոցիոլոգների պաշտոններ հետևյալ հաշվով՝ մեկ մասնագետ՝ 1—2 հազար աշխատողների դեպքում, իսկ ավելի քան 25 հազար աշխատողներ ունեցող միավորումներում ու ձեռնարկություններում մտցնել գլխավոր սոցիոլոգի պաշտոն՝ գլխավոր մասնագետների համար նախատեսված դրույքով:



Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը անցյալ տարվա օգոստոսի իր կարգադրությամբ հանրապետության մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարեց քննարկել հիշյալ որոշումը, հաստատել սոցիալական զարգացման ծառայության վերաբերյալ դրույթը՝ հաշվի առնելով ճյուղային առանձնահատկությունները և մինչև 1987 թ. փետրվարի 1-ը ներկայացնել կատարված աշխատանքի մասին:

Մանրամասն ուսումնասիրելով ճյուղերի առանձնահատկությունը և միավորումներում, ձեռնարկություններում աշխատողների թիվն ու մինիստրությունների գործունեության ծավալները, Հայկական ՍՍՀ աշխատանքի և սոցիալական հարցերի պետական կոմիտեն մշակել է առաջարկություններ՝ մոտ ժամանակներս հանրապետության ձեռնարկություններում ու միավորումներում, մինիստրությունների ու գերատեսչությունների ապարատներում 47 սոցիոլոգիական ծառայություններ ստեղծելու մասին: Սակայն վերոհիշյալ որոշումն ընդունվելուց հետո սոցիոլոգիական ծառայություն ստեղծվել է միայն տեղական արդյունաբերության մինիստրության համակարգում: Բացի այդ, կուսակցության շատ քաղկոմների ու շրջկոմների, մինիստրությունների ու գերատեսչությունների, խոշոր արտադրական ձեռնարկությունների ղեկավարներ չպատասխանեցին անցկացվող հետազոտությունները ՍՍԱ-ի հայկական բաժանմունքի միջոցով կոորդինացնելու անհրաժեշտության վերաբերյալ իրենց ուղարկված նամակներին, չարձագանքեցին անցկացվող հետազոտությունների գիտական մակարդակի ապահովման գործում օգնություն ցույց տալու առաջարկությանը: Ինչպես ասում են, մեկնաբանությունները այստեղ ավելորդ են: Ակներև է, որ մինիստրությունների, գերատեսչությունների ու մյուս կազմակերպությունների ղեկավարների նման դիրքորոշումը ոչ միայն վկայում է սոցիոլոգիայի հանդեպ ստեղծված բացասական վերաբերմունքի մասին, այլև հանդիսանում է վերադաս դիրեկտիվ մարմինների որոշումների ակնհայտ չկատարման կրկնության դրսևորում:

Հիմնավորապես լուծման կարիք ունի պրոֆեսիոնալ սոցիոլոգների կադրերի պատրաստման հարցը: Ինչպես հայտնի է, ՍՍՀՄ բուհմինը այդ իրավունքը տվել է Մոսկվայի, Լենինգրադի և Կիևի համալսարաններին: Սակայն, այդ բուհերը կարող են պատրաստել սոսկ աննշան թվով սոցիոլոգներ, ուստի և այդ պատճառով սոցիոլոգների հաստիքային պաշտոնները կզբաղեցնեն ոչ մասնագետները, և դա, անշուշտ, բացասաբար կանդրադառնա սոցիոլոգիական հետազոտությունների մակարդակի վրա:

Ավելի քան չորս տարի է, ինչ Երևանի պետական համալսարանում գործում է փիլիսոփայության և սոցիոլոգիայի ֆակուլտետը: Սակայն, եթե ֆակուլտետի ստեղծումը մտնում է հանրապետական մարմինների իրավասության մեջ, ապա մասնագետների պատրաստման ցուցակի հաստատումը որոշվում է ՍՍՀՄ բուհմինի կողմից: Երկարատև գրագրություններից հետո մեզ թույլատրեցին փիլիսոփաների պատրաստումը, իսկ սոցիոլոգների հարցում ձեռնպահ մնացին: Մինչդեռ ուսումնասիրությունը ցույց է տվել, որ ներկայումս հանրապետության ժողովրդական տնտեսությունը կիրառական սոցիոլոգիայի 400 մասնագետի կարիք ունի, իսկ դրանց ամենամյա պահանջմունքը կկազմի 25—30 մարդ: Բացի այդ, բոլոր միութենական հանրապետությունների համալսարաններում սոցիոլոգիական կրթության կազմակերպման անհրաժեշտությունը թելադրվում է նաև ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում գաղափարախոսական կադրերի պատրաստման՝ կուսակցության կողմից առաջադրված խնդրի լուծման պահանջով: Այս կապակցությամբ տեղին է ուշադրություն դարձնել այն բանի վրա, որ երկրում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցման հիմնական ուղղություններում առանձնապես ընդգծվում է արտադրության կառավարման և կազմակերպման, սոցիոլոգիայի, հոգեբանության բնագավառի մասնագետների պատրաստումն ընդլայնելու անհրաժեշտությունը:

Սովետական սոցիոլոգիական ասոցիացիայի պլենումի որոշման մեջ իրավամբ

նշված է, որ սոցիոլոգիական գիտության զարգացման շատ հարցերի լուծման դժվարությունները զգալիորեն կապված են մարքս-լենինյան հասարակագիտության համակարգում սոցիոլոգիայի ստատուսի անորոշության հետ: Մեր կարծիքով, այդ անորոշության հիմնական պատճառը մարքսիզմի երեք բաղկացուցիչ մասերի ոչ բավականաչափ ճիշտ բացատրությունն է: Չխորանալով ինչպես տեսության, այնպես էլ պրակտիկայի համար այդ կարևորագույն պրոբլեմի մանրամասնությունների մեջ, ուշադրություն դարձնենք միայն մի հարցի վրա: Հայտնի է, որ մեր գրականության մեջ մարքսիզմի երրորդ բաղկացուցիչ մասը համարվում է «գիտական կոմունիզմը», մինչդեռ Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինն ի նկատի ունեին «գիտական սոցիալիզմը», որը նրանք համարում էին պատմության մատերիալիստական ըմբռնման բաղկացուցիչ մասը, արդյունքը, հետևությունը: Հիշենք նաև, որ, բնութագրելով այդ մեծագույն հայտնագործությունը, Լենինն առանձնահատուկ շեշտել է. «Մարքսը... առաջին անգամ գիտական հողի վրա դրեց սոցիոլոգիան՝ սահմանելով հասարակական-տնտեսական ֆորմացիայի... հասկացությունը...» **(ԵԼԺ, հ. 1, էջ 162)**: Հետևապես Մարքսը ոչ միայն սոցիոլոգիան չի բացառել գիտությունների դասակարգումից, այլ առաջինն է տվել նրա համակողմանի գիտական հիմնավորումը: Ուստի սովետական հասարակագետների անհետաձգելի խնդիրն է՝ մարքս-լենինյան տեսությանը, ինչպես նաև գիտությունների դասակարգման պատմական հաջորդայնությանը և արդիականության բազմաբարդ պրոցեսների գիտական իմաստավորման աճող պահանջմունքներին լիովին համապատասխան, վերականգնել մարքս-լենինյան տեսության կարևորագույն բաղկացուցիչ մասը՝ մատերիալիստական սոցիոլոգիան: Դրանով իսկ կհաղթահարվի մարքս-լենինյան հասարակագիտության համակարգում սոցիոլոգիայի ստատուսի անորոշությունը: Հենց դրանով էլ կփոխվի վերաբերմունքը սոցիոլոգիայի, իբրև «երկրորդ տեսակի» գիտության նկատմամբ և կհաստատվի մյուս հասարակական գիտությունների հետ նրա հավասար ստատուսը: Դրանով կհաղթահարվի նաև այն բանի գերիշխող, մեր կարծիքով, ոչ ճիշտ ըմբռնումը, թե իբր պրոֆեսիոնալ սոցիոլոգներ են միայն նրանք, ովքեր սոցիոլոգիական հետազոտություններ են կատարում, գործ ունեն միայն հարցաթերթիկի և հարցման հետ: Սոցիոլոգը նախ և առաջ նա է, ով զբաղվում է հասարակության զարգացման հիմնական օրինաչափությունների ու միտումների հետազոտությամբ, իհարկե, կիրառական սոցիոլոգիայի տվյալների հիման վրա:

Մարքսիզմի բաղկացուցիչ մասերի համակարգում սոցիոլոգիայի ստատուսի վերականգնման հարցադրումը կարող է առարկություն կամ տարակուսանք առաջացնել. մի՞թե հայտնի չէ, որ մատերիալիստական կամ մարքս-լենինյան սոցիոլոգիա հասկացությունն արդեն գիտական շրջանառության մեջ է մտել: Դեռ ավելին, հայտնի է, որ վերջին տարիներին մեզ մոտ և սոցիալիստական մյուս երկրներում ընդարձակ գրականություն է հրատարակվել մարքս-լենինյան սոցիոլոգիայի ընդհանուր տեսական և կիրառական պրոբլեմների վերաբերյալ: Հատկանշական է նաև այն, որ հասարակական գիտությունների դերի բարձրացման հարցերի վերաբերյալ կուսակցության որոշումներում, փիլիսոփայության և քաղաքատնտեսության հետ մեկտեղ, ավելի ու ավելի հաճախակի է նշվում սոցիոլոգիան: Այս փաստերը ևս համոզում են, որ գիտական միտքն ու սոցիալիզմի կատարելագործման հասունացած պրոբլեմները հանգեցնում են մարքսիզմի հիմնական բաղկացուցիչ մասերի համակարգում մատերիալիստական սոցիոլոգիայի ճանաչմանը:

Երկրի սոցիոլոգները, ինչպես որ բոլոր հասարակագետները, խոր գոհունակությամբ և երախտագիտությամբ ընդունեցին հեղափոխական վերակառուցման գաղափարները, որոնցում արտացոլված են իրենց բազմամյա իղձերն ու խոհերը: Եվ դա հասկանալի է, քանզի հետլենինյան ժամանակաշրջանում կուսակցությունը հասարակագիտության մեջ և ողջ գաղափարախոսական աշխատանքում փաստորեն առաջին անգամ է ստեղծում ոչ թե խոսքով, այլ գործնականորեն ստեղծարար աշխատանքի իրադրություն: Մենք ունենք սոցիալական կյանքի բարդ և հակասական պրոցեսների համարձակ հետազոտություններ անցկացնելու, հասարակական գիտությունների դասավանդումն ու մեր հետազոտությունները դոգմատիզմի ու սխոլաստիկայի շրջանակներից դուրս հանելու հնարավորություն:

Մեր պարտքն է բարձրացնել սոցիոլոգիայի և ամբողջ հասարակագիտության արդյունավետությունը, այն ի սպաս դնել սոցիալիստական հասարակության առաջընթացի արագացման նպատակներին:

---



# ԵՐԿՐՈՐԴԱՅԻՆ, ԲԱՅՑ ՈՉ ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ

**Վ. ՉԱԼԱԲՈՎ**
**Տեխնիկական գիտությունների թեկնածու**

ՌՈՒՍ ՄԵԾ ԳԻՏՆԱԿԱՆ Դ. Ի. ՄԵՆԴԵԼԵԵՎԸ ժամանակին գրել է. «Քիմիայում թափոն չկա, այլ կա չօգտագործված հումք»: Գիտատեխնիկական հեղափոխությունն այսօր մեզ համոզում է, որ այդ պնդումը գործնականում իրավացի է ցանկացած արդյունաբերական արտադրության համար:

ՍՄԿԿ XXVII համագումարի, Կենտկոմի պլենումների որոշումներում խնդիր է դրված ռեսուրսախնայողությունը դարձնել ժողովրդական տնտեսության վառելիքի, էներգիայի, հումքի պահանջմունքների բավարարման վճռորոշ աղբյուր:

Հարցի արմատական լուծումը արդյունաբերական արտադրության վերակառուցումն է հենց բնությունից փոխառնված սկզբունքով՝ ապահովելու համար ստացված անխտիր բոլոր արդյունքների օգտավետ կիրառությունը, այսինքն՝ անթափոն կամ սկզբնական շրջանում՝ սակավաթափոն արտադրատեղամասերի ստեղծումն ու ներդրումը:

Երկրորդային ռեսուրսները քամահրանքով անվանվում են թափոններ: Եվ նույնիսկ հարկ էր լինում պայքարել դրանց դեմ: Քաղաքակրթության արշալույսին դրանք սպառնում էին ամբողջ բնակավայրերի գոյությանը: Ավելի ուշ սովորեցին ազատվել թափոններից՝ դրանք հորելով կամ այրելով: Այնուհետև սկսեցին մտածել՝ արդյոք արժե՞ ոչնչացնել աշխատանքով ձեռք բերվածը: Ավելի բարեհաճ վերաբերմունք արտացոլվեց դրանց նոր անվանման մեջ՝ երկրորդային ռեսուրսներ: Հասարակությունը գիտակցեց իր հետագա զարգացման համար սկզբունքային այն ճշմարտությունը, որ երկրի պաշարները սպառելի են: Եվ, ինչպես նկատել է գիտնականներից մեկը, հեռու չէ այն ժամանակը, երբ թափոններն ու մետաղի ջարդոնը կդառնան հումքի գլխավոր աղբյուր, իսկ բնական հարստությունները՝ օժանդակ ռեսուրսներ:

Անթափոն և սակավաթափոն արտադրատեղամասերի ստեղծումը բարդ, հոգնաշատ, բայց, ինչպես ցույց է տալիս կյանքը, խիստ անհրաժեշտ գործ է: Օրինակ, երկրի մետալուրգիական մի շարք գործարաններում ուղեկցող արտադրանքի արժեքը կազմում է հիմնական արտադրանքի զգալի մասը: Ալավերդու լեռնամետալուրգիական գործարանում այն հասնում է հիմնական արտադրանքի արժեքի 15 տոկոսին: Այս ձեռնարկությունում ամենայն լրջությամբ են վերաբերվում անթափոն տեխնոլոգիաների մշակման ու ներդրման հարցերին: Արմատական խնդիրը շրջակա միջավայրի պահպանումն է, վնասակար արտանետումների իսպառ բացառումը: Վերջերս այստեղ ներդրված է լվացվող լուծույթներից պղնձի հումքի մասնիկների կորզման նոր տեխնոլոգիա, որը մշակել է գունավոր մետալուրգիայի հայկական ԳՀ ինստիտուտը: Այդ տեխնոլոգիայի կիրառումը կոմբինատին լրացուցիչ տալիս է շուրջ 200 տոննա պղինձ կամ տարեկան 150—200 հազար ռուբլի: Նույն ձեռնարկությունում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Ուրալի բաժանմունքի գիտնականների հետ համագործակցելով հաջողվել է մշակել լուծույթների խոր մաքրմամբ զառիկի կորզման եղանակը, որն ապահովում է սանիտարական նորմաների պահանջները: Կորզված այդ նյութը կարելի է օգտագործել ապրանքային արտադրանք ստանալու համար, որն անփոխարինելի է փայտանյութի սնուցման մածուկ

թը, որը ծախսվում է արտադրության համար: Եվ այստեղ ոչ մի կապ չունեն գիտությունը, տեխնոլոգիան: Վաղուց ի վեր հայտնի են փայտանյութի մնացորդների վերամշակման թե՛ գինը, թե՛ մեթոդները: Ընդունված է մեղքը բարդել ձեռնարկությունների տխրահռչակ գերատեսչական տարանջատվածության վրա, իբր՝ ոչ ոք չի հավաքում, դրանք պահպանելու ցուցում չի տալիս, տրանսպորտ չի հատկացնում և այլն:

Ներկայումս գործածական է «ռեսուրսապահպան տեխնոլոգիա» գիտական հասկացությունը: Գուցե ժամանա՞կն է կիրառության մեջ դնել իրավաքանական իմաստով մեկ ուրիշ՝ «ռեսուրսապահպան կարգապահություն» և «պատասխանատվություն» հասկացությունները:

Այսօրվա գլխավոր հոգսերից մեկը երկրորդային ռեսուրսների օգտագործման մասշտաբների ընդլայնումն է: Մինչդեռ մեզ մոտ, ինչպես արդեն ասվեց, պոլիէթիլենային իրերը կրկին չեն վերածվում ելակետային հումքի, փայտատաշեղային սալիկների արտադրության մեջ օգտագործվում է փայտի մնացորդների մեկ տասներորդական մասը միայն, քիչ են օգտագործվում մաշված ավտոդողերը... Ամեն տարի անվերադարձ կորչում են միլիոնավոր ջարդված շշերի ապակին, մաշված կոշիկների կաշին, տրիկոտաժե անհամար իրերում օգտագործված բուրդը... Կրկնենք, որ երկրորդային ռեսուրսների տեսակների մեծ մասի վերամշակման համար գիտատեխնոլոգիական բնույթի արգելքներ չկան: Առկա վիճակը կարելի է բացատրել միայն ու միայն այդ կարևոր գործի կազմակերպման և կառավարման անկատարությամբ:

Երկրում վաղուց է կազմակերպվել մետաղի ջարդոնի հավաքման և կիրառման գործը: 1978 թվականից ուժի մեջ է մտել մետաղի ջարդոնի հավաքման, պահպանման, հանձնման և առաքման համար աշխատողներին պարգևատրելու մասին նոր կանոնադրություն: Կան ՍՍՀՄ պետմատում և այլ կազմակերպություններում այդ կարևոր պրոբլեմի նկատմամբ ցուցաբերվող լուրջ մոտեցման նաև ուրիշ փաստեր: Բայց պետք է ուղղակի ասել, որ այս բնագավառում դեռ անելիքները շատ են: Մետաղի ջարդոնի քանակի և դրա վերամշակման հնարավորության միջև եղած խզումը մեծ է: Կարևոր է ընդգծել, որ մակարդակների նման տարբերությունն առաջացել է արդյունաբերական մնացուկների ամենևին էլ ոչ լիակատար հավաքման պայմաններում: Հեշտ է գտնել օբյեկտիվ պատճառներ, որոնք, իբր, խանգարում են գործն առաջ մղելուն. նյութատեխնիկական թույլ բազա, մնացորդների օգտագործման ոչ կատարյալ եղանակներ, կոլեկտիվներում խնայողությունը խթանելու կոչված տնտեսական անբավարար միջոցներ: Պլանավորող, ֆինանսական մարմինները նույնպես կոչված են խորապես ուսումնասիրելու գործերի վիճակը այդ կարևոր բնագավառում և ցույց տալու անհրաժեշտ օգնություն:

Այս գործում բնավ և վերջին տեղը չի զբաղեցնում հոգեբանական գործոնը: Ինչ ասել կուզի, տակավին կան մարդիկ, որոնք տառացիորեն են ընկալում «անսպառ» մակդիրը, երբ խոսք է բացվում մեր երկրի բնական հարստությունների մասին: Իսկ եթե այդ այդպես է, խնայողության կոչը ընկալվում է իբրև «լուցկին տնտեսելու» անլուրջ զբաղմունք:

Դեն նետելու, «չմանրանալու» սովորությունը երբեմն մատուցվում է որպես հակում դեպի մասշտաբայնությունը, որպես շռայլ խառնվածքի վկայություն: Բայց չէ որ ժամանակին տեքստիլագործները հաշիվ են տվել նաև թելամնացուկների համար, ընդսմին՝ ամենայն խստությամբ: Իսկ հիմա այդ թելամնացուկները չեն նշվում նույնիսկ ծախսերի հաշվառման մատյանում: Գուցե դա նո՞ւյնպես մանրուք է: Բնա՛վ: Այդպիսի տրամադրությունները ժամանակին տարածում գտան նաև այն պատճառով, որ մնացուկների վերամշակումը շատ տեղերում կողմնակի աշխատանքի համարում ուներ, և, ցավոք, այժմ էլ ունի: Վերջին շրջանում մինիստրությունների ու գերատեսչությունների պլանների մեջ մտցվում է երկրորդային ռեսուրսների վերամշակման վերաբերյալ բաժին: Բայց արդյունաբերական ապրանքներ թողարկող ոչ բոլոր ձեռնարկություններն են կատարում այդ կարևոր ցուցումը:

Քիչ չեն դժվարությունները երկրորդային հումքի մթերման, պահպանման և առաքման գործում: Դրանցից առանձնապես տուժում են «երկրորդային հումքի» ձեռնարկությունները, որոնք առաջին հերթին և անմիջականորեն են պատասխանատու թափոնները հավաքելու գործում: Խոսքը տրանսպորտի, կադրերի, նյութական բազայի մասին է: Բայց հարկ է լրջորեն վերաբերվել այսքան մասշտաբային գործին՝ «երկրորդային հումքի» արմատական վերակառուցմանը: Այդ ծառայության ջանքերը չեն կարող վերջնականապես լուծել բուն պրոբլեմը: Այստեղ անհրաժեշտ է ամբողջ



հասարակության, մեզանից յուրաքանչյուրի և, ամենագլխավորը, տեղական սովետների օգնությունը, ավելի ճիշտ՝ իշխանության տեղական մարմինների կողմից այդ աշխատանքի ղեկավարումը:

Մի ժամանակ բակից բակ էին շրջում հնոտիահավաքները՝ երեխաներին «շահագրգռելով» հին շորեր, կոշիկներ հավաքելու մեջ: Ասում են «հեղինակությունը կյանքից դուրս է մղել» զբաղմունքի այդ տեսակը: Իսկ եթե մարդուն հարմար տրանսպորտ հատկացվի և նյութական օգնություն ցույց տրվի՞... Մի՞թե քիչ հնարավորություններ կան այդ գործը հաջողությամբ կազմակերպելու համար: Մարդիկ գնում են հանձնելու այդ չարաբաստիկ շշերը, արատ ունեցող շշերը չեն ընդունվում, և դրանք հաճախ թողնվում են ընդունման կետի մոտակայքում: Իսկ ինչու՞ նման կետերի և խանութների աշխատողներին չշահագրգռել նաև այդ հումքը հավաքելու գործում: ԳԴՀ-ում, օրինակ, տարեկան շրջանառության մեջ է վերադարձվում 700 մլն շիշ, 467 մլն ապակե բանկա: Նույնիսկ ապակու փշրանքները չեն նետվում աղբանոց, դրանք հավաքվում են հատուկ արկղերում և ապա վերամշակվում: Քիմմաքրման կետերի աշխատողներն առանց որևէ բարդությունների կարող են, հավելյալ վարձատրության դիմաց, բնակիչներից ընդունել նաև մաշված, գործածությունից դուրս եկած գործվածքներ, զանազան իրեր: Կարելի է կոշկակարի մոտ թողնել հին, ոչ պետքական կոշիկն այն հաշվով, որ դա հանձնվի վերամշակման: Խոսքը դարձյալ նախաձեռնության մասին է, բայց այժմ արդեն՝ ղեկավար-տնտեսվարների նախաձեռնության: Թվում է, թե մեզանից յուրաքանչյուրը սոսկ իր խնդիրներն ունի, իրականում և վերջին հաշվով դրանք ընդհանուր են բոլորիս համար: Մենք մտածում ենք վաղվա օրվա մասին, ուրեմն և վաղվա արդյունաբերական հումքի մասին արդեն այսօր հոգ տանելը բոլորիս պարտքն է: Այս են պահանջում ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումները, երկրի տնտեսական և սոցիալական հետագա զարգացման հնգամյա պլանը, որը հաստատվեց ՍՄԿԿ XXVII համագումարում և որտեղ կա հատուկ բաժին՝ «Շրջակա միջավայրի պահպանությունը, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը» վերնագրով:

Այսպիսով, պրոբլեմն առաջին անգամ դարձել է կենտրոնացված պլանավորման առարկա: Ժամանակն է խնդիրը լուծել հիմնավորապես: «Թափոն» հասկացությունը պետք է դուրս մղվի տնտեսավարման ոլորտից: Այսօր մենք ի վիճակի ենք այնպես կազմակերպել աշխատանքը, որ մեր հանրապետությունում արտադրության եթե ոչ բոլոր թափոնները, չօգտագործվող, շարքից դուրս եկած և օգտագործված բազմապիսի նյութերը, ապա դրանց գոնե մի մասը վերամշակվի ու ծառայի ժողտնտեսության կարիքներին: Այդ պատճառով անհրաժեշտ է հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման հնգամյա և տարեկան պլանները կազմելիս նախատեսել ու ապահովել երկրորդային հումքի վերամշակման կարողությունների առաջանցիկ զարգացումը: Իսկ դրա համար անհրաժեշտ է, նախ և առաջ, հոգեբանորեն վերակառուցվել յուրաքանչյուր օղակում, ամեն մի աշխատողի մեջ մշակել նորովի մտածելու ունակություն: Խոշոր մասշտաբի այդ բարդ խնդրի լուծումը, թերևս, կպահանջի նաև որոշակի կապիտալ ներդրումներ և նյութական ռեսուրսներ: Յուրաքանչյուր ձեռնարկությունում արտադրական արդյունքներն ամփոփելիս հարկավոր է այնպիսի խստությամբ հաշիվ պահանջել թափոնների վերամշակման ուղղությամբ կատարված աշխատանքի համար, ինչպես որ հիմնական արտադրանքի թողարկման համար:

Եվս մեկ հանգամանք. տարեցտարի ավելի ակնհայտ է դառնում, որ թափոնների օգտագործման գործընթացը կարիք ունի լուրջ վերլուծության ու կառավարման, քանի որ այն կազմում է սոցիալիստական բնօգտագործման կարևոր բաղկացուցիչ մասը: Հավանաբար, նպատակահարմար կլիներ, որ պետմատը քննության առներ երկրում թափոնների ռեգիոնալ ու ճյուղային պահեստարանների համակարգերի ստեղծման հարցը: Հարկ է արագացնել բնական և երկրորդային հումքի գնագոյացման մեխանիզմի կատարելագործման, տնտեսական խթանների ու պատժահրահանգների համակարգի մշակման աշխատանքները, որպեսզի ուժեղացվի մինիստրությունների, գերատեսչությունների ու ձեռնարկությունների շահագրգռվածությունը բնական հումքի կոմպլեքսային օգտագործմամբ: Դրա համար, իհարկե, ուղեկցող արտադրանքը պետք է մտցվի պլանների մեջ:

Այսօր, քաղաքական ու տնտեսական նոր մտածելակերպի և գործելակերպի պայմաններում, երևան են գալիս կոոպերատիվներ: Եվ չէին կարող երևան չգալ: Կարելի՞ է արդյոք ընդմիշտ արգելքի տակ պահել նախաձեռնությունը, չօգտագործել տե-

սանելի ռեզերվները, անտեսել այն մարդկանց, մոռանալ նրանց մասին, ովքեր կարող են պիտանի լինել արտադրության համար (հանրապետությունում կան մոտ կես միլիոն թոշակառուներ, հարյուր հազար ուսանողներ):

... Երկրորդային ռեսուրսների արտադրամիավորման տարածքում կազմակերպվել է «Կոշկագործ» կոոպերատիվ, որը զբաղվում է երկրորդային ռեսուրսների հայթայթմամբ ու վերամշակմամբ: Այն սկսել է արտադրանք տալ ընթացիկ տարվա սկզբից և ընդամենը երկուս և կես ամսվա ընթացքում պատրաստել է 3.400 զույգ տնային կոշիկներ ու մաշիկներ՝ 30 հազար ռուբլու ընդհանուր գումարով: Զուտ եկամուտը կազմել է 18 հազար ռուբլի, որով համարյա լիովին հատուցվել են սարքավորումների ձեռքբերման, հումքի և նյութերի հայթայթման նախնական պարտքերը: Պլանավորվում է ընթացիկ տարում ընդլայնել արտադրությունը, աշխատողների թիվը 28-ից հասցնել 50-ի և թողարկել մինչև 100 հազար զույգ կոշիկ: Նախատեսված է նաև յուրացնել նոր արտադրատեսակներ:

Մեկ այլ օրինակ. Երևանի «Նորույթ» կոոպերատիվը համամիութենական մանրամեծածախ տոնավաճառում կես ժամում կնքեց 336 հազար ռուբլու պայմանագրեր: Սակայն այդ կոոպերատիվի պատրաստած մետաքսյա բանկոնակների նկատմամբ պահանջարկը էականորեն գերազանցում է առաջարկին: Բայց չէ որ լայն ընդունելություն գտած այդ մանկական վերնազգեստները կարվում են երկրորդային հումքից: «Նորույթը» հայկական առաջին կոոպերատիվներից մեկն է, և հանրապետությունում նոր է ծավալվում աշխատանքի կազմակերպման այդ ձևը: Արդեն գործում են 20-ից ավելի կոոպերատիվներ: Նրանց թողարկած արտադրատեսակների թվում են՝ հեռուստացույցների շարքից դուրս եկած կինեսկոպներից պատրաստված սկուտեղներ, տրանսպորտի կանգառի ցուցանշաններ, հին մետաղյա բանկաներից պատրաստվող ցուցանակներ, որոնք փակցվում են մեքենասարքավորումների վրա: Սա արդեն «Ալինա» կոոպերատիվի արտադրանքն է, որը ստեղծվում է քաղաքային աղբանոցից հայթայթվող նյութերով:

Կոոպերատիվները նախատեսում են ընդլայնել երկրորդային հումքի օգտագործման շրջանակները, գործածության մեջ դնել նույնիսկ այնպիսի անհավանական թվացող իրեր, ինչպիսիք են կտրված շշերն ու նրանց օգտագործված մետաղյա փակիչները, արյան փոխներարկման միանվագ օգտագործման սիստեմները և այլն, ու դրանցից պատրաստել բազմազան օգտակար իրեր:

Երկրորդային հումքը երկրորդական չէ. տնտեսավարման այս սկզբունքը պետք է պարտադիր լինի բոլորի համար և ամենուրեք, հատկապես դա են պահանջում ՍՄԿԿ XXVII համագումարի և Կենտրոնական կոմիտեի 1987 թ. հունվարյան պլենումի որոշումները: Մինչդեռ վերակառուցումը դեռևս լրիվ չափով չի ընդգրկել արտադրության ինտենսիվացման այդ կարևոր բնագավառը: Ինչպես և նախկինում, մինիստրություններն ու գերատեսչությունները չնչին կապիտալ ներդրումներ են նախատեսում թափոնների ուտիլացման արտադրական կարողությունների ստեղծման համար:

Արդյունաբերության ճյուղերում օբյեկտիվ պահանջ է վերակողմնորոշումը դեպի երկրորդային նյութական ռեսուրսները՝ արտադրության թափոնները և հարակից նյութերը լայն շրջանառության մեջ մտցնելը:

Այդպիսի վերակառուցումը կապված է շատ պրոբլեմների հետ, այդ թվում նաև բարոյական բնույթի: Նախ և առաջ հարկ է հիմնովին փոխել թափոնների նկատմամբ տնտեսավարների արհամարհական վերաբերմունքը, իսկ այդպիսի ստերեոտիպ արմատացել է մեզ մոտ տասնամյակների պրակտիկայում: Եվ տնտեսավարման ավանդական մեթոդներն էլ չեն ապահովում թողարկվող միավոր արտադրանքի համար ռեսուրսների ծախսումների էական կրճատում: Պատճառն այն է, որ գործող տնտեսական մեխանիզմը շատ դեպքերում կազմակերպություններին, ձեռնարկություններին, գերատեսչություններին չի շահագրգռում ուտիլացնելու և օգտագործելու արտադրական թափոնները: Անհրաժեշտ են պլանային-կառավարչական գործուն լծակներ, որոնք խթանեն երկրորդային ռեսուրսների օգտագործումը: Դա էլ իր հերթին ռեսուրսախնայողական, սակայն և անթափոն նոր տեխնոլոգիաների մշակման ու կիրառման խթան կհանդիսանա: Կյանքը վկայում է, որ այսօր գոյություն չունեն գիտական և տեխնիկական անլուծելի խնդիրներ, որոնք խոչընդոտեն արտադրության թափոնների մեծ մասի ուտիլացմանն ու օգտագործմանը:

Խնդիրն այժմ տնտեսավարման ինտենսիվ մեթոդներին անցնելն է:

---

# ԱՆՀԱՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Գ. ՂԱԶԱՐՅԱՆ**

ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ԱՐԴԵՆ ՄԻ ՔԱՆԻ ԱՄԻՍ գործում է անհատական աշխատանքային գործունեության վերաբերյալ օրենքը՝ ուղղված ապրանքների և ծառայությունների դեֆիցիտի պրոբլեմի լուծմանը, անձնական աշխատանքի ծախսումներին համապատասխան այդ գործունեությունից ստացված եկամուտների կարգավորմանը, հանրօգուտ աշխատանքում բնակչության զբաղվածության մեծացմանը: Պետությունը անհատական աշխատանքային գործունեությունը կարգավորում է՝ ապահովելով նրա օգտագործումը հօգուտ հասարակության շահերի: Արտադրողական ուժերի զարգացման հետ մեկտեղ հատկապես արագ աճում են բնակչության պահանջմունքները անհատական բնույթի տարբեր տեսակի ծառայությունների նկատմամբ, կապված, օրինակ, ավտոմեքենաների սպասարկման, բնակարանների, ռադիոհեռուստատեսային և էլեկտրասարքերի վերանորոգման, լեզուների ուսուցման հետ: Իսկ ինչպիսի՞ իրավիճակ էր ստեղծվել այս ոլորտում 80-ական թվականների կեսին: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում նշվեց, որ նորմալ չի կարելի համարել, երբ քաղաքում և գյուղում բնակելի տների, կենցաղային տեխնիկայի նորոգումը, կոշիկի և հագուստի կարումը վերածվում են շատ բարդ պրոբլեմի: Պատահական չէ, որ այդ ոլորտում առաջացել է յուրատեսակ «ստվերային էկոնոմիկա»: Վիճակագրական տվյալներով բնակչությունը սպասարկումների դիմաց ամեն տարի մասնավոր անձանց վճարում է մոտ 1,5 մլրդ ռուբլի: Տնտեսագետների հաշվարկներով «ստվերային ոլորտում» իրացվող ծառայությունների ծավալը 80-ական թվականների կեսերին անհամեմատ ավելի մեծ է: Այլ տվյալներով հասարակական սեկտորը կենցաղային ծառայություններում բնակչության կարիքները բավարարում է ոչ ավելի, քան ամբողջ պահանջմունքների մեկ քառորդը... Գյուղում այսպես կոչված մասնավոր ծառայությունների բաժինը հասնում է 80 տոկոսի:

Այսպիսի իրավիճակը, բնականաբար, չէր կարող բավարարել ոչ մեր պետությանը, ոչ էլ բնակչության պահանջմունքները: Նման պայմաններում կենսական անհրաժեշտություն դարձավ անհատական աշխատանքային գործունեության բնագավառում հարաբերությունները կարգավորող օրենքի ընդունումը: Խոսելով այդ մասին, ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Կարծում եմ, ընկերներ, թե՛ մեր սեփական փորձը, թե՛ մյուս սոցիալիստական երկրների փորձը խոսում են սոցիալիզմի շրջանակներում այդպիսի տնտեսական ձևերի հմուտ օգտագործման և անհրաժեշտության մասին: Դրանք օգնում են մարդկանց կենսական պահանջմունքների ավելի լրիվ բավարարմանը, «ստվերային» էկոնոմիկայի, չարաշահումների ամեն տեսակ ձևերի դուրսմղմանը, այսինքն՝ սոցիալ-տնտեսական հարաբերությունների առողջացման իրական պրոցեսին»:

Ներկայումս ընթանում է քաղաքացիների ակտիվ ներգրավում անհատական աշխատանքային գործունեության ոլորտում: Հայկական ՍՍՀ-ում ընթացիկ տարվա հուլիսի 1-ի դրությամբ ֆինանսական մարմիններից արտոնագրեր և գրանցման վկայականներ են ստացել 3624 քաղաքացիներ: Հանրապետությունում հատկապես զարգանում են զբաղմունքների և ծառայությունների այնպիսի տեսակներ, որոնք նախկինում արգելված էին: Դրանք են՝ անձնական ավտոմոբիլների և տրանսպոր-

դրենք, 400 ռուբ. «նստվածք է տալիս» աշխատավորների խնայողությունների տեսքով, իսկ մնացած հոսքը 800 ռուբ. չափով ծածկվում է անհատական շուկայի 200 կ. ա. մ. ապրանքաշրջանառությունը: Վճարունակ պահանջարկի ավելացումը, բավարարում չգտնելով կազմակերպված շուկայում (գները այստեղ հարաբերականորեն կայուն են), առաջարկ է գտնում անհատական շուկայում: Բայց քանի որ այստեղ արդեն կա գների ազատ տատանման հնարավորություն, ապա այս պայմաններում անհատական շուկան փաստորեն դառնում է կայուն-դեֆիցիտային ապրանքների շուկա, որտեղ պահանջարկը մշտապես գերազանցում է առաջարկին (պետք է հաշվի առնել, որ մրգերի, բանջարեղենի, մսի և այլ մթերքների արտադրությունը հետ է մնում հասարակական պահանջմունքներից), իսկ գները կայուն կերպով գերազանցում են ապրանքների արժեքը՝ խախտելով փոխանակության համարժեքությունը: Դրանով իսկ անհատական շուկան վերածվում է յուրօրինակ փականի, որը շրջանառության մեջ որոշ չափով հավասարակշռում է ապրանքադրամական զանգվածը: Սակայն, դրա հետ միասին, տարերային գնագոյացման մեխանիզմի միջոցով տեղի է ունենում եկամուտների վերաբաշխում հօգուտ առանձին սոցիալական խմբերի, որը մենք անվանում ենք ներռեգիոնալ վերաբաշխում:

Ինչպես արդեն նշել ենք, արտադրողական ուժերի աճը հանգեցրել է անհատական շուկայի զգալի զարգացման, անհատական սեկտորի ապրանքային արտադրանքի փոխադրումների աշխարհագրության ընդլայնման, անհատական առևտրի ելքին՝ տեղական շրջանառության սահմաններից զգալիորեն դուրս: Ավտոմոբիլային և օդային տրանսպորտի զարգացումը խոշոր խթան հանդիսացավ միջռեգիոնալ անհատական առևտրի ծաղկման համար՝ նրա ապրանքային ռեսուրսների ազատ տեղափոխման պայմաններում: Կարճ ժամանակամիջոցում դեֆիցիտային ապրանքները հարավային ռեգիոններից տեղափոխվում են երկրի կենտրոնական կամ հեռավոր շրջանները, որտեղ դրանք շուկայական հարաբերությունների տարերքի պայմաններում, իրացվում են 4—5 անգամ թանկ, քան տեղական շուկաներում: Ըստ որում, ապրանքների աշխատանքային արժեքից գների զգալի գերազանցումն այստեղ ունի կայուն, երկարատև բնույթ և հնարավորություն է տալիս ստանալու խոշոր գերաշխատանքային եկամուտներ, չխոսելով այն մասին, որ վաճառելով գնված արտադրանք, որոշ մարդիկ, հաճախ ստանում են առևտրական շահույթ: Դրանով իսկ տեղի է ունենում աշխատողների եկամուտների տարերային միջռեգիոնալ վերաբաշխում՝ հօգուտ հարավային ռեգիոնների անհատական շուկայի, որտեղ գյուղատնտեսական դեֆիցիտ ապրանքների արտադրության համար կան առավել բարենպաստ բնակլիմայական պայմաններ:

Դրա հետևանքով չհաշվառված դրամական զանգվածի զգալի հոսք է ուղղվում այդ ռեգիոնները: Կենտրոնանալով այստեղ, այն շրջանառության մեջ ստեղծում է ապրանքադրամական զանգվածի անհամամասնության բարձր մակարդակ, խորացնում նյութական բարիքների արտադրության և բաշխման միջև հակասությունները (քանի որ դրամական զանգվածի վերաբաշխումը վերջին հաշվով հանգեցնում է հասարակական հարստության վերաբաշխման): Այսպիսով, շրջանառության մեջ դրամական զանգվածի ավելցուկը և միջռեգիոնալ անհատական առևտրի ազատությունը հանգեցնում է եկամուտների ներռեգիոնալ և միջռեգիոնալ վերաբաշխման, ըստ որում, այդ պրոցեսները ընթանալով միաժամանակ, ենթարկվում են փոխադարձ ազդեցության, որը նպաստում է դրանց ուժեղացմանը:

Պարզ ապրանքային արտադրությունը սոցիալիզմի զարգացման տվյալ փուլում օբյեկտիվ անհրաժեշտություն է: Այն դեռևս երկար ժամանակ գոյություն կունենա իբրև հասարակական արտադրության լրացուցիչ օղակ և բաղկացուցիչ մաս: Սոցիալիստական արտադրաեղանակի պայմաններում գործող հարաբերությունների այդ ձևը, էականորեն փոփոխվելով, ստանում է այլ, յուրօրինակ բովանդակություն: Նախկին հարաբերությունների էական փոփոխությունը, առաջին հերթին, արտահայտվում է շահագործման հարաբերությունների բացակայությամբ և հանրայնացված տնտեսությունների հետ նոր բազմակողմանի հարաբերությունների դրսևորմամբ: Անցյալում, օրինակ, մանրապրանքային արտադրությունը ծառայում էր իբրև սնուցիչ միջավայր կապիտալիստական տնտեսությունների զարգացման համար: Իսկ «մանր բուրժուազիա» հասկացությունը, որը վերագրվում էր նաև գյուղի և քաղաքի այն մանր սեփականատերերին, որոնք իրենց տնտեսություններում հիմնականում կիրառում էին անձ-



նական կամ իրենց ընտանիքի անդամների աշխատանքը, կապված էր վարձու աշխատանքի շահագործման բուրժուական հարաբերությունների հետ, քանի որ նրանցում պոտենցիալ կերպով կարող էր կիրառվել, և իրականում կիրառվում էր վարձու աշխատանք: Սակայն «սոցիալիզմի ժամանակ վերջնականորեն և անվերադարձ վերացվում են մանրապրանքային արտադրությունը կապիտալիստականի վերափոխվելու օբյեկտիվ պայմանները. այն արդեն չի կարող հանդես գալ որպես սոցիալ-տնտեսական հիմք կապիտալիստական արտադրահարաբերությունների վերածննդի համար...» (Н. Лушина, «Коммунист», 1986 г., №18, с. 25):

Անհատական արտադրությունը սոցիալիզմի օրոք արդեն մանրբուրժուական չէ և առավել ևս չի կարող դառնալ այդպիսին, գործելով պարզ ապրանքային արտադրության հիմնական օրենքի՝ արժեքի օրենքի պայմաններում, ապրանքա-դրամական շրջանառության հաշվեկշռվածության և անհատական առևտրի ռեգիոնալ պտույտի պայմաններում: Շուկան կարգավորելու որոշակի միջոցների դեպքում, որոնք ընդհանուր առմամբ ապահովում են փոխանակության համարժեքությունը, բացառում են կայուն գերաշխատանքային եկամուտների ստացման հնարավորությունը, արտադրության այդ ձևը միայն օգուտ կբերի հասարակությանը: Հարկավոր է հմտորեն կարգավորել շուկայի պայմանները և գտնել անհատական արտադրության զարգացման ռեզերվները: ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի 7-րդ նստաշրջանում Ն. Ի. Ռիժկովը ասաց. «Տնտեսական նոր մեխանիզմը միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների վրա պատասխանատվություն է դնում ռեգիոնի բնակչության դրամական եկամուտների և ծախսերի հստակ հաշվեկշռման համար: Ցավոք, որոշ հանրապետություններ այստեղ էլ են հույսը դնում գլխավորապես կենտրոնական մարմինների օգնության, ապրանքային ռեսուրսներն իրենց օգտին վերաբաշխելու վրա... Այդ ամենը առաջացնում է մարդկանց դժգոհությունը, գցում աշխատանքի նկատմամբ շահագրգռվածությունը: Ներկայիս վիճակը կտրուկ փոփոխելու համար տեղական մարմինները պետք է ավելի լրիվ օգտագործեն արտադրության, առևտրի և սպասարկումների կազմակերպման բոլոր ձևերը, ներառյալ կոոպերատիվները, բնակչության անհատական աշխատանքային գործունեությունը: Հանրայնացված արտադրության համակողմանի զարգացման, նրա թողարկած արտադրանքի որակի բարձրացման, ֆինանսավարկային համակարգի գործունեության բարելավման և այլ ստրատեգիական միջոցառումների հետ միասին, որոնք իրականացվում են երկրի էկոնոմիկայի վերակառուցման ընթացքում, անհատական սեկտորում արտադրության աճը կնպաստի ֆինանսանյութական հաշվեկշռվածության կայունացմանը և, հետևաբար, կմեղմացնի եկամուտների ներռեգիոնալ վերաբաշխումը, կհանգեցնի բնակչության բազմակողմանի պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը: Այս կապակցությամբ մեծ դեր է կոչված խաղալու անհատական աշխատանքային գործունեության վերաբերյալ օրենքը:

ԱՕՏ-ի ապրանքայնության աճն ինքնին երկրի համար անհրաժեշտ ու դրական պրոցես է, և այն հարկավոր է օգտագործել ինչպես անձնական, այնպես էլ հասարակական շահերի համար՝ գտնելով դրանց զուգակցման ուղիները: Այդ նպատակով անհրաժեշտ կլինի կարգավորել ԱՕՏ-ի արտադրանքի ռեգիոնալ առևտուրը, կտրուկ ակտիվացնել այդ գործում սպառողական կոոպերացիայի դերը, դրանց տերերի համար առավել ձեռնտու դարձնել ապրանքների իրացումը սպառկոոպերացիայի միջոցով: 1986 թ. Կուբանի աշխատավորության հետ հանդիպման ժամանակ, նկատի ունենալով ԱՕՏ-ի ապրանքային արտադրանքը, Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Պետք է, որպեսզի այն ամենը, ինչ աճեցվում է, իրացվի կոոպերացիայի հետ պայմանագրերի հիման վրա: Ահա այն ժամանակ դա կկրի բացառապես սոցիալիստական բնույթ»: Ասենք նաև, որ արտադրանքի արտահանումը ռեգիոնի սահմաններից դուրս և ընդհանրապես ապրանքների իրացումը շուկայում կապված է աշխատաժամանակի խոշոր կորուստների և շրջանառության մեծ ծախքերի հետ, որոնցից կարելի է խուսափել, եթե այդ արտադրանքի փոխադրման, պահպանման և իրացման գործը ստանձնի սպառկոոպերացիան՝ միաժամանակ կարողանալով արտադրանքը որակյալ և արդյունավետ կերպով հասցնել սպառողին: Այդ ամենը կնպաստի ինչպես ռեգիոնների ներսում, այնպես էլ նրանց սահմաններից դուրս տարերայնորեն ընթացող նեգատիվ պրոցեսների մեղմացմանը: Հունգարիայում, օրինակ, անհատական շուկան ունի այլ առանձնահատկություններ՝ միանման (այստեղ,

ԱՕՏ-ում արտադրությունն իրականացվում է, ի տարբերություն մեր երկրի, համարյա միատեսակ բնակլիմայական և աշխարհագրական պայմաններում), ամփոփ, ռեգիոնալ բնույթ և, հասկանալի է, որ այդ պայմաններում չի կարող ընթանալ եկամուտների վերաբաշխման տարերային այն պրոցեսը, ինչպես մեզ մոտ: Առավել ևս, որ այնտեղ վճարունակ պահանջարկի և առաջարկի ընդհանուր հաշվեկշռվածությունը պահպանվում է, իսկ անհատական սեկտորի արտադրանքը դուրս է գալիս երկրի սահմաններից արտաքին առևտրական ֆիրմաների միջոցով:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն 1987 թ. հուլիսի 23-ին կայացած նիստում, քաղաքացիների ԱՕՏ-ի ներդրումը պարենային պրոբլեմի լուծման ուղղությամբ մեծացնելու նպատակով, երաշխավորեց վերանայել անասուններ պահելու նորմաները և տնամերձ հողակտորների թույլատրելի սահմանները: ԱՕՏ-ում անասուններ պահելու նորմաները սահմանման մեջ յուրօրինակ ձևով հանդես է գալիս «հավասարեցման» արգելակող փիլիսոփայությունը: Իրականում կան ընտանիքներ (կախված ընտանիքի անդամների թվից, նրանց սեռատարիքային կազմից, առողջական վիճակից և այլն), որոնք հնարավորություն ունեն պահելու ասենք 7 կով կամ 70 ոչխար, իսկ կան այնպիսիք, որոնք նման հնարավորություն ընդհանրապես չունեն, այնպես որ այստեղ անհրաժեշտ է անասունների պահման «նորմերի» տարբերակում: Ինչո՞ւ սահմանափակել մարդկանց պոտենցիալ աշխատանքային էներգիան, եթե ԱՕՏ-ի հնարավորություններն առանց այդ էլ սահմանափակ են: Այս հարցում, և ոչ միայն այս, չպետք է լինի ոչ տնտեսագիտական, վարչական մոտեցում:

Պարզաբանելով սոցիալիզմի քաղաքատնտեսական կատեգորիաների էությունը և ապահովելով համարժեք փոխանակության՝ արժեքի օրենքի գործողության նորմալ պայմանները, անհրաժեշտ է գործնականորեն բարձրացնել հանրօգուտ աշխատանքի ցանկացած ձևի հեղինակությունը, բոլոր այն մարդկանց, որոնք պատրաստ են ազնվորեն աշխատել իրենց տնամերձում կամ էլ տնային արհեստանոցում:

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՇՎԱՌՄԱՆ ԴԵՐԸ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ԱՐԱԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

**Խ. ՄՈՒԹԱՖՅԱՆ**
**Ս. ԺՈՒՂՈՒՐՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածուներ**

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ երկրի ժողովրդական տնտեսության զարգացման վերակողմնորոշման կուրս է վերցրել՝ շեշտը դնելով տնտեսավարման ինտենսիվ մեթոդների վրա, դրանով իսկ ապահովելով էկոնոմիկայի արդյունավետության բարձրացումը: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում նշվեց. «Գիտատեխնիկական հեղափոխության բուռն ընթացքը, ժողովրդական տնտեսության կտրուկ բարդացումը, ծանրության կենտրոնը էքստենսիվ մեթոդներից ինտենսիվ մեթոդների, քանակից որակի վրա փոխադրելու անհրաժեշտությունը, սոցիալական պայմանների ազդեցության ուժեղացումը, մարդկային գործոնի դերի կտրուկ աճը տնտեսական կառավարման արմատական վերափոխումներ էին պահանջում»:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացումը և գիտության ու տեխնիկայի նվաճումների հետևողական կիրառումը կուսակցությունը բնութագրում է որպես մեր երկրի էկոնոմիկայի զարգացման կարևորագույն հանգուցային պրոբլեմ: Գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման արդի տնտեսական պրակտիկան պահանջում է մշակել արտադրության հետ գիտության կապերի հաշվառման նոր մոտեցումներ, տեսականորեն հիմնավորել այդ կապերի փոխհամաձայնեցման ու փոխկապվածության մեթոդներն ու եղանակները, ապահովել դրանց արդյունավետ կիրառումը:

Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը և նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքների ձեռքբերմանը նպաստում են նյութական ու ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, աշխատաժամանակի, հումքի, վառելիքի ու էներգիայի խնայողությունը, արտադրանքի որակի բարելավումը:

Այդ պայմաններում մեծանում է գիտատեխնիկական առաջադիմության ծախսումների նկատմամբ կատարվող վերահսկողության և հաշվառման կատարելագործման նշանակությունը: Անհրաժեշտ է արտադրության ծախսերի հաշվառման ու վերահսկման այնպիսի մեթոդներ կիրառել, որոնք ապահովեն ծախսված ռեսուրսների և դրանց փաստացի հատուցման հիմնավորված համադրումը:

Ընթացիկ տարվա սկզբից արդյունաբերության բոլոր ճյուղերը փոխադրվել են տնտեսավարման նոր եղանակի: Մի շարք ճյուղեր, ձեռնարկություններ և միավորումներ անցել են լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման: Այս պայմաններում գիտական հետազոտությունների և փորձնակոնստրուկտորական աշխատանքների համար նախատեսված միջոցների նպատակահարմար ու արդյունավետ օգտագործման նկատմամբ վերահսկողության իրականացումն առաջնահերթ նշանակություն է ստանում: Կուսակցության և կառավարության մի շարք որոշումներում նշվում է ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում հաշվառման որակի ու օպերատիվության բարձրացման, հաշվարկային փաստաթղթերի և հաշվետվության կատարելագործման անհրաժեշտությունը: Դա հավասարապես վերաբերում է նաև գիտատեխնիկական առաջադիմության փաստացի արդյունավետության հաշվառմանը:

Սակայն հարկ է նշել, որ տեսության մեջ ու գործնականում պատշաճ ուշադրություն չի դարձվում ԳՏԱ-ի տնտեսական արդյունքների հաշվառման հարցերին, որը հաճախ հանգեցնում է անցանկալի հետևանքների. դժվարանում է արդյունավետության հաշվարկի բազմաթիվ մեթոդների ճշտության հաստատման հնարավորությունը, կառավարող մարմինները զրկվում են միջոցառումների ներդրումից ստացված իրական արդյունքի մասին ստույգ ինֆորմացիայից: Վերջին հաշվով, ներդրվող միջոցառումների արդյունքների նկատմամբ վերահսկողության բացակայությունը հանգեցնում է նրան, որ արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր լծակը չի օգտագործվում:

Հրատապ գիտական և գործնական խնդիր է գիտատեխնիկական առաջադիմության միջոցառումների ներդրումից ստացված փաստացի տնտեսական արդյունքի հաշվառման մեթոդիկայի մշակումը, որն ունի ժողովրդատնտեսական մեծ նշանակություն: Այն հնարավորություն կընձեռի լիարժեք վերահսկողություն սահմանելու ԳՏԱ-ի արդյունավետության և տնտհաշվարկային տնտեսական արդյունքի նկատմամբ, որոշելու նրա ազդեցությունը արտադրության ծախսերի նվազեցման վրա, իրականացնելու խնայողության ռեժիմ:

Մինչդեռ գիտատեխնիկական առաջադիմության կառավարման համակարգում գործող հաշվապահական հաշվառման մեթոդիկայի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այն դեռևս չի համապատասխանում երկրի էկոնոմիկայի աճող պահանջներին: Հաշվառումը չի իրականացնում արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների ներդրման ծախսերի հստակ խմբավորում, բացակայում է փաստացի ծախսերի համակարգային ամփոփիչ հաշվառումն ըստ ֆինանսավորման օբյեկտների ու աղբյուրների, որը, վերջին հաշվով, թուլացնում է կառավարման վերահսկողության ֆունկցիաները և իջեցնում արտադրանքի ինքնարժեքի հաշվարկման ստույգության աստիճանը:

Նոր տեխնիկայի ներդրման նյութական խթանման գործող համակարգը հիմնվում է ոչ թե փաստացի տնտեսական արդյունքի վերաբերյալ հաշվապահական հաշվառման տվյալների, այլ հաշվարկային տարեկան տնտեսական արդյունքի մեծության վրա: Գործնականում դա հանգեցնում է երկու բացասական երևույթների. խոշոր պարգևատրումներ ստանալու նպատակով հաճախ արհեստականորեն բարձրացվում են տարեկան տնտեսական արդյունավետության չափերը, բացի այդ՝ կառավարող տնտեսական մարմինները չեն կատարելագործում տեխնիկական առաջադիմության համար կատարվող ծախսերի հաշվառման գործը:

Գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման տեմպերի ու մասշտաբների արագացումն անհրաժեշտաբար պահանջում է ռացիոնալ օգտագործել այդ նպատակների համար հատկացված միջոցները: Ուստի կարևոր է իմանալ, թե ինչ միջոցների հաշվին և ինչ ծավալով են այդ ծախսերը բաշխում գիտատեխնիկական առաջադիմության միջոցառումների իրականացման յուրաքանչյուր փուլում: Դժվար է գերագնահատել նշված տվյալների կարևորությունը գիտության ու տեխնիկայի զարգացման և ստացված արդյունքները արդյունաբերական ձեռնարկության մակարդակով կիրառելու գործում: Հետևապես, հաշվապահական հաշվառման կատարելագործումը մնում է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն պրոբլեմներից մեկը:

Մինչդեռ ձեռնարկության մակարդակով ԳՏԱ-ի միջոցառումների ներդրման փաստացի ծախսերի և արդյունքների հաշվառման վիճակի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այն չի համապատասխանում արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման արագացման պահանջներին: Հաշվառման թերությունները ծնող պատճառները կարելի է բաժանել երկու խմբի: Առաջին խմբին են վերաբերում գիտատեխնիկական առաջադիմության ծախսերի և արդյունքների հաշվառման տեսական հիմունքների անբավարար մշակվածությունը, երկրորդին՝ գիտատեխնիկական առաջադիմության կառավարման հաշվային ապասարկման չլուծված պրոբլեմները: Սրանց թվին հարկ է դասել նորմատիվային տնտեսության կատարելագործման, նոր տեխնիկայի ներդրման փաստացի ծախսերի հաշվառման բարելավման հարցերը՝ ըստ ֆինանսավորման գործող աղբյուրների: Գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման համակարգում հաշվառման թերություններից է նաև այն, որ ստացվող հաշվային ինֆորմացիան աչքի չի ընկնում իր վերլուծականությամբ և օպերատիվությամբ:

Այդ հրատապ խնդրի լուծման համար հուսալի նախադրյալներ է ստեղծում արտադրության ծախսերի հաշվառման նորմատիվային մեթոդը, որի օգնությամբ օպերատիվ կերպով բացահայտվում են հումքի, նյութերի, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների ծախսերի, նորմաների փոփոխությունների մեծությունները: Այդ նորմաների փոփոխման (որպես կանոն, դրանց նվազեցման) տնտեսական էությունը գիտատեխնիկական առաջադիմության միջոցառումների իրականացման կոնկրետ արդյունքն է: Հետևաբար, արտադրատեսակների համապատասխան ծավալի համար վերահաշվարկված նորմաների փոփոխման մասին տվյալները ելակետային բազա են ծառայում ԳՏԱ-ի միջոցառումների ներդրումից ձեռք բերած փաստացի արդյունավետությունը որոշելու համար: Սակայն դրանց ոչ ամեն մի փոփոխություն կարելի է, վերջին հաշվով, համարել գիտատեխնիկական առաջադիմության տնտեսական արդյունավետություն: Յուրաքանչյուր միավորումում պարբերաբար կատարվում է նյութական ու աշխատանքային ծախսերի ընթացիկ նորմաների վերանայում, որը պայմանավորված է բազմաթիվ գործոններով: Ուստի ստացված փաստացի արդյունավետությունը հաշվարկելիս հարկ է հաշվի առնել միայն այն նորմատիվային ծախսերի փոփոխությունը, որը կատարվել է գիտատեխնիկական նվաճումների ներդրման հաշվին:

Ինտենսիվացման պայմաններում աշխատանքի ինքնարժեքի իջեցումը հնարավոր է միայն տեխնիկայի, տեխնոլոգիայի և արտադրության կազմակերպման մըշտական կատարելագործման հիման վրա: Էքստենսիվ գործոնները մեծ մասամբ արդեն սպառվել են, ուստի ինքնարժեքի իջեցման պլանավորումը պետք է համաձայնեցվի գիտատեխնիկական և կազմակերպական միջոցառումների հետ՝ ծախսերի նորմաների փոփոխման պլանավորման միջոցով: Ինքնարժեքի փաստացի իջեցումը մեծ մասամբ իրականացվում է գործող ծախսային նորմաների փոփոխման հաշվին, որոնց մեծությունը պետք է արտացոլվի հաշվառման օգնությամբ: Ուստի կարևոր է, որպեսզի այդպիսի փաստացի փոփոխությունների մասին ինֆորմացիան օպերատիվ կերպով ստացվի կառավարման բոլոր օղակներում, որոնք ապահովում են արտադրության զարգացման միջոցառումների մշակումն ու ներդրումը: Արտադրության ղեկավարները արտադրամասերում ու տեղամասերում պետք է տեղյակ լինեն, թե ինչու՞ են ուշանում նորմաների փոփոխությունները և, հետևապես, չի իջնում արտադրանքի ինքնարժեքը:

Ինչպես արտադրական ծրագրի ամենօրյա կատարման, այնպես էլ նոր տեխնիկայի նախապատրաստման ու յուրացման աշխատանքների կոորդինացման դեպքում, այսինքն՝ արտադրության ընթացքի վրա գիտատեխնիկական առաջադիմության առավել ակտիվ ներգործության ժամանակահատվածում, առանձնահատուկ տեղ ունի գծային կառավարումը (արտադրամասի պետ, վարպետ, բրիգադավար և այլն): Այն կոչված է օպերատիվ հակադարձ կապ ապահովելու կոնստրուկտորատեխնոլոգիական ծառայությունների և ընթացիկ արտադրության միջև, այսինքն՝ կազմակերպելու արտադրական ծախսերի նորմաների փոփոխման հաշվառում արտադրության մեջ գիտատեխնիկական առաջադիմության արդեն ներդրված միջոցառումների փաստացի արդյունավետությունը որոշելու համար:

Վերջին ժամանակներս տնտեսագիտական գրականության մեջ երևան են եկել մի շարք աշխատություններ, որոնցում այս կամ այն չափով քննարկվում են գիտատեխնիկական առաջադիմության արդյունավետության որոշման և հաշվառման հարցերը: Տնտեսագետները հիմնականում ԳՏԱ-ի փաստացի արդյունավետության չափման դժվարությունները կապում են ծախսերի հաշվառման նորմատիվային մեթոդի ոչ լիարժեք կիրառման հետ: Գիտատեխնիկական առաջադիմության փաստացի արդյունավետության չափման համար պահանջվում է ունենալ նորմաների լավ կարգավորված հաշվառում: Մինչդեռ պրակտիկայում նորմաների փոփոխությունների ընդհանրացմանը պատշաճ ուշադրություն չի նվիրվում: Հաշվապահությունում նորմատիվային ծախսերի հաշվարկներն անհրաժեշտ է կատարել տեխնիկական (տեխնոլոգիական) փաստաթղթերում համապատասխան փոփոխությունների գրանցման հետ զուգահեռ՝ ըստ արտադրական փաստաթղթերի:

ԳՏԱ-ի տնտեսական կառավարման մեջ հաշվարկային ինֆորմացիոն համակարգի կատարելագործման նպատակով միավորման (ձեռնարկության) կենտրոնական հաշվապահությունում նպատակահարմար է կիրառել նոր հաշիվ՝ «Գիտատեխնիկական նվաճումների ներդրման ծախսեր» անվանմամբ, որտեղ կընդգրկվեն ԳՏԱ-ի արդյունքների ներդրման վրա կատարված բոլոր ծախսերը՝ ըստ ուղղությունների, գոյացման կենտրոնների և ֆինանսավորման աղբյուրների: Դա հնարավորություն

# ԿՈՒՍՇԱՐՔԵՐԻ ՈՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԻ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՀԱՄԱՐ

**Ռ. ՌԱՓՅԱՆ**
***ՀԿԿ Կամոյի շրջկոմի կազմբաժնի վարիչ***

Այժմ, ԵՐԲ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ կյանքում է՛լ ավելի է աճել ՍՄԿԿ-ի ղեկավար դերը, նրա անընդհատ զարգացումն ու ինքնակատարելագործումը, նրա շարքերի անխախտ միասնությունն ու համախմբվածությունը, կոմունիստի ազնիվ ու անաղարտ կերպարի համար պայքարը դարձել են կուսակցության XXVII համագումարի որոշումների հաջող կենսագործման գրավականը: Համագումարի պահանջները ուղեցույց են ՀԿԿ Կամոյի շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների համար: Նրանք ամեն կերպ ձգտում են կուսակցության շարքերը համալրել արժանավորներով, բարելավել որակական կազմը և որոշ հաջողության են հասել այդ հույժ կարևոր գործում: Վերջին հինգ տարում շրջանային կուսկազմակերպությունում զգալիորեն աճել է նյութական արտադրության ոլորտում զբաղված, նրա վճռական տեղամասերում աշխատող կոմունիստների տեսակարար կշիռը: Կուսակցական միջուկն ամրապնդվել է բոլոր գյուղատնտեսական ձեռնարկություններում, կաթելի և սարքաշինական գործարաններում, գուլպայի և կարի ֆաբրիկաներում: 1986 թ. ՍՄԿԿ շարքերն ընդունված 110 կոմունիստներից 77-ը բանվորներ են: Կոմունիստների թիվն ավելացել է հատկապես անասնապահությունում, կապալային եղանակով աշխատող դաշտավարական և տնտհաշվարկային շինարարական բրիգադներում, արդյունաբերության պատասխանատու տեղամասերում: Հատկանշական է երիտասարդության և կանանց աճող շահագրգռությունը լենինյան կուսակցությանը գիմնվորագրվելու հարցում: ՍՄԿԿ շարքերն ընդունվածների շուրջ 71 տոկոսը ՀամԼԿԵՄ անդամներ են, 37 տոկոսը՝ կանայք:

Կուսակցությունը կտրականապես պահանջում է չտարվել ՍՄԿԿ շարքերի արհեստական աճով՝ ի հաշիվ որակական կազմի: Սակայն այդ պահանջի պրակտիկ իրականացման գործում մեզ մոտ դեռևս կան ոչ քիչ թերություններ: Այսպես, չի կարող չանհանգստացնել այն հանգամանքը, որ վերջին հինգ տարում ՍՄԿԿ 26 անդամներ վտարվել, իսկ ՍՄԿԿ անդամության երկու թեկնածուներ դուրս են մնացել կուսակցության շարքերից: Որպես կանոն, նման փաստերի պատճառը այդ հարցի նկատմամբ կուսկազմակերպությունների դրսևորած անպատասխանատու վերաբերմունքն է, անհրաժեշտ պահանջկոտության, սկզբունքայնության բացակայությունը, «համախառն» ցուցանիշների հետևից ընկնելը: Մինչդեռ այսօր կուսակցությունը խնդիր է դնում մեր աշխատանքի արմատական վերակառուցման ընթացքում որակապես բարելավել, նոր ձևերով ու բովանդակությամբ հարստացնել ՍՄԿԿ շարքերն ընդունվողների անհատական ընտրության գործը, այն համապատասխանեցնել ՍՄԿԿ փոփոխված կանոնադրության պահանջներին:

Նախկինում երբեմն լինում էր և այսպես. մարդը կատարում է արտադրական պլանները, զերծ է իրեն վարկաբեկող արարքներից, նշանակում է՝ նրա դիմումին կարելի է դրական ընթացք տալ: Եվ միայն որոշ ժամանակ անց պարզվում էր, որ նման անձանց ակտիվությունը սահմանափակվում է սեփական նյութական շահերով, իսկ ոմանք էլ «աչքի են ընկնում» անտարբերությամբ ամեն ինչի նկատմամբ:



Նման դիրքորոշում ունեցողները կուսակցության հետ ընդհանուր ոչինչ ունենալ չեն կարող: Դրա համար մեր մարդկանց համակում ենք այն զգացումով, որ միշտ և յուրաքանչյուր իրավիճակում կոմունիստը պետք է աչքի ընկնի սկզբունքայնությամբ, համարձակությամբ, ընդհանուր գործի համար շահագրգռությամբ, պայքարի կուսակցության ծրագրի և կանոնադրության պահանջների անշեղ իրականացման համար: Հատուկ ուշադրություն ենք նվիրում անկուսակցական ակտիվի հետ տարվող աշխատանքին: Նրանց ներգրավում ենք արտադրության և պետական կառավարման ոլորտում, հասարակական կազմակերպություններում: Այսօր շրջանի տեղական սովետների 573 դեպուտատներից 328-ը, ընտրովի արհմիութենական մարմիններում աշխատողներից 1.370-ը, ժողվերահսկողության խմբերում ու պոստերում ներգրավվածներից 1.676-ը անկուսակցականներ են: Հասարակական գործերում իրենց լավ դրսևորողներին կուսկազմակերպությունները տալիս են ավելի լուրջ հանձնարարություններ, ներգրավում կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգերում, երիտասարդ կոմունիստի դպրոցներում: Քայլ առ քայլ կուսկազմակերպությունները ծանոթանում են իրենց կոլեկտիվների անդամների քաղաքական և բարոյական հատկանիշներին, թե որքանով են դրանք համապատասխանում կուսակցության կանոնադրության բարձր պահանջներին, ըստ այդմ էլ լուծում են նրանցից լավագույնին իրենց շարքերն ընդգրկելու հարցը: Նման հանձնարարություններ են տրվում նաև երիտասարդ կոմունիստներին: Այդպիսի ուսանելի փորձ կա, մասնավորապես, սարքաշինական գործարանի կուսկազմակերպությունում: Այսպես, Ա. Աղլամազյանը դեռ մինչև ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվելը ակտիվ կոմերիտական աշխատող էր: Այժմ նա ընդգրկված է լայն սպառման ապրանքների արտադրամասի բրիգադային խորհրդի կազմում, ղեկավարում է արտադրամասի կոմերիտական կազմակերպությունը: Պատասխանատու հանձնարարություններ ունեն նաև երիտասարդ կոմունիստներ Վ. Մնացականյանը, Մ. Սարգսյանը, Ե. Մանուկյանը և ուրիշներ:

ՍՄԿԿ շարքերն ընդունվողների նկատմամբ պահանջկոտության ուժեղացման միջոց են կուսակցական ժողովները: Շատ կազմակերպություններում ՍՄԿԿ անդամության թեկնածուի ընդունելության հարցի բացահայտ, բազմակողմանի և միաժամանակ սկզբունքային քննարկումը կոմունիստներին հնարավորություն է ընձեռում համատեղ վերլուծել նրա անձնական հատկանիշները, պարզել գաղափարաքաղաքական պատրաստվածության մակարդակը, բարոյական սկզբունքները: Դրա հետ մեկտեղ ժողովների մի մասը, որոնցում քննարկվում են ընդունելության գործերը, ցավոք, անցնում են նախապես ծրագրված սցենարով: Մինչդեռ մեկ-երկու ստանդարտ հարցերը, ընդհանուր բնորոշումները չեն կարող տալ ամբողջական պատկերը և նպաստել կուսակցության որակական կազմի բարելավմանը: Այդ կարգի թերություններ կան № 28 ՇՄԸ-ի, Այրիվանի, Կարմիրի, Գեղարքունիքի սովխոզների, քաղաքի, կապի հանգույցի սկզբնական կուսկազմակերպություններում:

Կուսշրջկոմն ու շատ սկզբնական կազմակերպություններ ձգտում են հասնել այն բանին, որպեսզի ամբողջությամբ պարզ դառնա, թե որքանով է ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվողը պատրաստ ընթանալու երկրի կյանքի վերակառուցման և սոցիալ-տնտեսական զարգացման արագացման համար պայքարի առաջնագծում, հաստատելու իր նվիրվածությունը կուսակցության գործին:

Սկզբունքային նշանակություն է ձեռք բերում ՍՄԿԿ կանոնադրության այն դրույթը, ըստ որի կուսակցության մեջ ընդունելության հարցերը պետք է քննարկվեն, որպես կանոն, դռնբաց կուսժողովներում: Կարճ ժամանակամիջոցի պրակտիկան վկայում է, որ այդ ձևը հնարավորություն է ընձեռում կոմունիստներին՝ քննարկումներն անցկացնել ավելի բարձր մակարդակով և բազմակողմանիորեն, լսել և հաշվի առնել աշխատանքային կոլեկտիվների, այն մարդկանց կարծիքը, ովքեր արտադրական և հասարակական գործերով են ճանաչում ընդունվողին: Անցած տարի շրջանի կուսկազմակերպությունում ՍՄԿԿ անդամության թեկնածուների մեծ մասը ընդունվել է դռնբաց ժողովներում: Իսկ Կամոյի սովխոզ-տեխնիկումի, սարքաշինական գործարանի, կարի և գորգի ֆաբրիկաների սկզբնական կուսկազմակերպություններում անկուսակցական ընկերների մասնակցությամբ քննարկվել են բոլոր թեկնածությունները: Եվ պետք է ասել, որ նրանց մասնակցությունը մեծապես նպաստել է ժողովների գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացմանը:

Ավելի հաճախ ընդունվողների մասին ասվում են լավ խոսքեր, բայց երբեմն էլ լինում են բացասական բնույթի գնահատականներ: Դրանք օգնում են ժողովական-

ների՝ ավելի սկզբունքորեն անցկացնել հարցի քննարկումը, իսկ առանձին դեպքերում նաև հետաձգել որոշման ընդունումը: Նման մոտեցման արդյունավետությունն անհամեմատ բարձր է: Դրա հետ մեկտեղ մենք ունենք նաև կուսկազմակերպություններ (դպրոցական, «Սևան» հանքային ջրերի գործարանի, Ծաղկաշենի, Այրիվանի, Ծովազարդի սովխոզների), որտեղ ընդունելության վերաբերյալ հարցերի քննարկմանը չեն մասնակցում նույն բրիգադում, տեղամասում աշխատող անկուսակցական ընկերները: Եվ ստացվում է այնպես, որ իր ձևով ժողովը դռնբաց է, իսկ ըստ էության՝ ոչ, քանի որ ընդունվողի քաղաքական և բարոյական հատկանիշները լավ ճանաչող ընկերները քննարկմանը չեն մասնակցում: Մինչդեռ նրանց կարծիքը կարող էր ունենալ վճռորոշ նշանակություն: Ահա թե ինչու շրջկոմը մեծ ուշադրություն է նվիրում դռնբաց ժողովների մանրակրկիտ նախապատրաստմանը այն հաշվով, որ լիովին բացառվի ձևականությունը կուսակցական աշխատանքի այդ կարևոր տեղամասում:

ՍՄԿԿ շարքերը ընդունելու գործում ոչ մի նախապատրաստական ձեռնարկում չի կարող լիովին փոխարինել մարդկանց ուսուցմանն ու դաստիարակմանը: Մենք ջանում ենք ավելի մեծ ուշադրություն նվիրել թեկնածուական ժամանակաշրջանի դերի բարձրացմանը: Այդ աշխատանքն արդեն տալիս է իր արդյունքը: Կուսշրջկոմի կազմակերպությունների գործունեությունը նպատակամղում է թեկնածուական ժամանակաշրջանում երիտասարդ կոմունիստների ակտիվության բարձրացմանը, նախաձեռնության զարգացմանը: Նրանք լայնորեն ներգրավվում են կուսակցական աշխատանքում: Ներկայումս ՍՄԿԿ անդամության 98 թեկնածուներ ունեն մշտական կուսակցական հանձնարարություններ, նրանց մեծ մասն իր գործունեությունը ծավալում է կոմերիտմիությունում: Իրենց արտադրական և հասարակական պարտականությունների կատարման մասին ՍՄԿԿ անդամության թեկնածուները հաշվետվություն են տալիս սկզբնական կուսկազմակերպությանը, աշխատանքային կոլեկտիվին: Միայն անցած տարի կուսակցական ժողովներում, կոմիտեների ու բյուրոների նիստերում նման հաշվետվություններով հանդես են եկել 86 թեկնածուներ:

Այդ ժողովներում կոմունիստները սկզբունքային կարծիքներ են հայտնում թեկնածուի գործնական, քաղաքական և բարոյական հատկանիշների մասին: Բազմաթիվ օրինակներից նշեմ երկուսը: Կարի ֆաբրիկայի սկզբնական կուսկազմակերպությունում լսվում էր ՍՄԿԿ անդամության թեկնածու, փաթեթավորող բանվորուհի Ս. Սարգսյանի հաշվետվությունը: Նրա մասին կոմունիստները, աշխատանքային ընկերները արտահայտվեցին դրականորեն: Ասացին՝ բանիմաց է, բարեխիղճ, նախաձեռնող, օգնում է ընկերներին: Դրա հետ մեկտեղ նշեցին, որ թեկնածուն պետք է ավելի ակտիվորեն կատարի կուսակցական հանձնարարությունները, բարելավի երիտասարդների հետ տարվող աշխատանքը: Իսկ կաբելի գործարանի կապի կաբելների արտադրության կուսխմբի կոմունիստների ու աշխատանքային ընկերների առջև իր մասնագիտական գիտելիքների, կանոնադրական պարտականությունների կատարման մասին հաշվետվությամբ հանդես է եկել ՍՄԿԿ անդամության թեկնածու, բանվոր Տ. Հովհաննիսյանը: Ժողովի մասնակիցները նշեցին, որ թեկնածուն դեռևս բավարար չափով չի զբաղվում իր գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացմամբ և խորհուրդ տվեցին նրան՝ շատ կարդալ, ավելի խորությամբ ուսումնասիրել ՍՄԿԿ ծրագիրն ու կանոնադրությունը: Այդ քննարկումները կարևոր նշանակություն ունեցան Ս. Սարգսյանի, Տ. Հովհաննիսյանի ակտիվության և գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացման համար:

ՍՄԿԿ երիտասարդ անդամների և անդամության թեկնածուների գաղափարական մակարդակի բարձրացման գործում կարևոր դեր է պատկանում երիտասարդ կոմունիստի դպրոցին, որն ստեղծվել է շրջկոմին առընթեր: Դպրոցի ուսումնական ծրագրերը կազմելիս հիմնական շեշտը դրվում է ՍՄԿԿ կանոնադրության դրույթների առավել մանրակրկիտ ուսումնասիրության վրա: Այստեղ երիտասարդ կոմունիստները դասախոսություններ են լսում կուսակցական կյանքի սկզբունքների ու նորմերի, տնտեսական շինարարության, պետական և հասարակական կազմակերպությունների կուսակցական ղեկավարման լենինյան սկզբունքների ու մեթոդների, կադրային քաղաքականության, վերակառուցման ու արագացման կուսակցության ստրատեգիական կուրսի պահանջներից բխող այլ խնդիրների վերաբերյալ: Նրանք ստանում են քաղաքական կոփվածք, հասունանում գաղափարապես: Հաճախակի կազմակերպվում են հանդիպումներ շրջկոմի քարտուղարների, կուսակցության, Հայրենա-



կան մեծ պատերազմի և աշխատանքի վետերանների, արտադրության առաջավորների հետ:

Շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների ամենօրյա ուշադրության կենտրոնում են արտադրությունում երիտասարդ կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման, նրանց կողմից աշխատանքային և հասարակական պարտականությունների կատարման հարցերը: Սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար հաղորդումներ են տալիս շրջկոմին այդ ասպարեզում գործերի իրական վիճակի վերաբերյալ: Եվ ըստ այդմ էլ հետևություններ են արվում այս կամ այն կոմունիստի ակտիվության բարձրացման և ընդունելության կազմակերպման նպատակով կազմակերպությունների ծավալած գործունեության մասին:

Երիտասարդների հետ տարվող նման աշխատանքը նպաստում է նրանց մասնագիտական և գաղափարաքաղաքական աճին, գործնական և բարոյական հատկանիշների առավել լավ դրսևորմանը: Դա միաժամանակ դառնում է կադրերի ռեզերվի ստեղծման կարևոր միջոց: Քիչ չեն այն երիտասարդ կոմունիստները, որոնք, իրենց ուղին սկսելով բանվորական հաստոցից, ցուցաբերում են կազմակերպչական լավ ունակություններ և առաջ քաշվում ղեկավար պոստերում: Նորադուզի սովխոզի դաշտավարական բրիգադի բրիգադավար Պ. Հարությունյանը, սարքաշինական գործարանի կադրերի բաժնի վարիչ Ա. Բազիկյանը, նույն գործարանի ինժեներ-տեխնոլոգ Մ. Հերգնյանը, կարի ֆաբրիկայի բրիգադավարներ Ա. Հովեյանը, Ժ. Գևորգյանը և շատ ուրիշներ ղեկավար աշխատանքի են առաջ քաշվել կուսկազմակերպությունների երաշխավորությամբ և արդարացնում են իրենց նկատմամբ ցուցաբերված վստահությունը:

Կուսակցության մեջ ընդունվողի համար պատասխանատվություն են կրում սկզբնական կազմակերպության բոլոր անդամները, առանձնապես նրանք, ովքեր տալիս են գրավոր երաշխավորություն: Ինչպես նշվում է կուսակցության կանոնադրությունում, երաշխավորողները պատասխան են տալիս ոչ միայն ընդունվողների քաղաքական, գործնական և բարոյական հատկանիշների համար, այլև իրենց գործունեությամբ նպաստում են նրանց գաղափարաքաղաքական աճին: Այդ գործում առավել արդյունավետորեն օգտագործվում են կոմունիստ վարպետ-դաստիարակների ուժերը: Հատկանշական է գուլպայի ֆաբրիկայի կուսկազմակերպության փորձը: Այստեղ երիտասարդ բանվորների, ՍՄԿԿ անդամության թեկնածուների հետ տարվում է ծրագրավորված աշխատանք, նրանց գործունեության նկատմամբ սահմանվում է մշտական հսկողություն: Վարպետ-դաստիարակներ Ա. Թոռչյանը, Ռ. Խաչատրյանը հմտորեն են զուգակցում իրենց արտադրական գործունեությունը ուսուցանողի, դաստիարակողի պարտականության հետ: ՍՄԿԿ անդամության թեկնածուներ, գործող արտադրամասի բանվորուհիներ Գ. Մարտոյանին, Ի. Թյուրիբաբյանին երաշխավորել է արտադրամասի պետ Կ. Բալագոզյանը, սակայն դրանով նա իր պարտքը ավարտած չի համարում: Երիտասարդ բանվորուհիներին սիրով հաղորդում է իր փորձը, օգնում հաղթահարելու դժվարությունները: Թեկնածուական ժամանակաշրջանի վերջում աղջիկները իրենց վարպետ-դաստիարակին յուրատեսակ քննություն կհանձնեն ամենախիստ կանոններով:

Եվս մեկ կարևոր հանգամանք. ՍՄԿԿ անդամության թեկնածուների հաշվետվությունները իրենց թեկնածուական ժամանակաշրջանում կատարած աշխատանքի մասին լսվում են անպայման երաշխավորողների ներկայությամբ: Անհրաժեշտության դեպքում նրանց համար պատասխան են տալիս երաշխավորող ընկերները: Այդպես եղավ, օրինակ, Գավառագետի ոռոգման և ջրարբիացման համակարգերի վարչության ջրօգտագործման բաժնի պետ, ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվող Գ. Փեփոյանի հետ: Շրջկոմի բյուրոն նրան ՍՄԿԿ շարքերը չընդունեց՝ տրված հանձնարարությունների կատարմանը անբարեխղճորեն վերաբերվելու և ակտիվություն չդրսևորելու համար: Այդ բանի վրա հրավիրվեց նաև երաշխավորող կոմունիստների ուշադրությունը:

Կուսակցության մեջ ընդունելությամբ ՍՄԿԿ շարքերի ամրապնդման, որակական կազմի բարելավման նպատակով տարվող աշխատանքը, իհարկե, չի ավարտվում: Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները ձգտում են, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ պայքարի կուսակցական կարգապահության ամրապնդման, ՍՄԿԿ անդամի ազնիվ ու անաղարտ կերպարի համար, պատասխանատվություն դրսևորի իր պարտքի կատարման նկատմամբ: Ամենօրյա գործունեությամբ շրջկոմը նպատակ է հետապնդում կոմունիստների միջոցով սկզբնական կազմակերպություն-

ներում ստեղծել բարոյահոգեբանական այնպիսի իրավիճակ, որը բացառի կանոնադրության խախտումները, որպեսզի կուսակցական վերահսկողությունից դուրս չմնա ոչ մի կուսկազմակերպություն, ոչ մի կոմունիստ:

Ներկուսակցական դեմոկրատիայի, կուսակցական կարգապահության ամրապնդման, կոմունիստների ավանգարդային դերի ապահովման արդյունավետ միջոց են ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների, այդ թվում ղեկավար աշխատողների հաշվետվությունները աշխատավորական կոլեկտիվների, իրենց իսկ ընկերների առջև: Միայն 1986 թ. իրենց գործունեության մասին կուսկազմակերպություններին հաղորդում են տվել 362 կոմունիստներ: Հաճախակի ղեկավար կադրերի և առաջատար մասնագետների հաշվետվությունները քննարկվում են նաև շրջկոմի բյուրոյում: Այդ առնչությամբ լսվել են Գեղարքունիքի սովխոզի դիրեկտոր Հ. Աղաջանյանի, Բատիկյանի սովխոզի դաշտավարական բրիգադի բրիգադավար Հ. Ծաքարյանի, շրջանային և քաղաքային սովետների ժողկրթության բաժինների վարիչներ Լ. Գուլաբյանի և Լ. Բատիկյանի, Կամոյի սովխոզ-տեխնիկումի գլխավոր անասնաբույժ Լ. Կարապետյանի և ուրիշների զեկուցումները:

Շրջանի շատ կուսկազմակերպություններում հաշվետվությունները նախապատրաստվում են հանգամանորեն և ունենում են դաստիարակչական մեծ նշանակություն: Օրինակ, Ծովազարդի սովխոզի կոմունիստները լսել են տնտեսության դիրեկտոր Զ. Խաչիկյանի հաշվետվությունն իր պարտականությունների կատարման վերաբերյալ: Ժողովում խոսվեց այն մասին, որ նա անբավարար է աշխատում կադրերի հետ, չունի կոլեկտիվի վրա հենվելու ցանկություն: Զ. Խաչիկյանը անհրաժեշտ հետևություններ արեց իր հասցեին արված քննադատությունից, իսկ կոմունիստներն օգնեցին նրան՝ ճիշտ տեղաբաշխելու կադրերը, նրանց ուժերը նպատակամղելու կարևոր պրոբլեմների լուծմանը, կոլեկտիվում ստեղծելու գործարար, ստեղծագործական մթնոլորտ:

Կուսշրջկոմը ըստ ամենայնի խթանում է աշխատանքի այնպիսի ձևը, ինչպիսին կուսակցական ժողովներում կամ կոմիտեների ու բյուրոների նիստերում կոմունիստների բնութագրերի հաստատումն է: Միայն անցած տարի սկզբնական կուսկազմակերպությունները հաստատել են շրջկոմի բյուրոյի նոմենկլատուրայի մեջ մտնող 112 ղեկավար աշխատողների բնութագրեր: Կարևորելով հաշվետվությունների ու բնութագրերի քննարկումների պրակտիկան՝ ՍՄԿԿ XXVII համագումարում ընկ. Մ. Ս. Գորբաչովը Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ նշեց, որ դրանք նպաստում են իրենց կազմակերպության հանդեպ կուսակցության բոլոր անդամների պատասխանատվության բարձրացմանը և նրանց կողմից միմյանց նկատմամբ այնպիսի պահանջկոտության ստեղծմանը, որը բացառի որևէ մեկի կողմից կուսակցական նորմերն անտեսելու ամեն մի հնարավորություն: Այս դրույթն այսօր մեզ համար գործողության ուղեցույց է:

ՍՄԿԿ անդամների նկատմամբ պահանջկոտության ուժեղացումը, նրա շարքերի անաղարտության համար պայքարը նշանակում է նաև վճռականորեն ազատվել նրանցից, ովքեր արատավորում են կոմունիստի վսեմ կոչումը, խախտում կանոնադրությունը: Ինքնաքննադատաբար պետք է նշել, որ մեզ դեռևս չի հաջողվել այս գործում անհրաժեշտ բարձրության հասցնել սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվությունն ու սկզբունքայնությունը, դեռևս չի արվում ամեն ինչ ներքևից եկող քննադատությունը զարգացնելու, իներցիան հաղթահարելու համար, ճիշտ գնահատական տալու նրանց գործունեությանը, ովքեր արգելակում են ընդհանուր առաջընթացը: Սկզբնական կուսկազմակերպությունների անբավարար մարտունակության մասին է խոսում այն փաստը, որ 1986 թ. շրջկոմի բյուրոն չի հաստատել կոմունիստների անձնական հարցերի քննարկման առթիվ նրանց ընդունած 24 որոշում: Շրջկոոպի սկզբնական կուսկազմակերպությունը, օրինակ, քննարկելով կոմունիստ Ս. Բարսեղյանի հարցը, հաշվի չէր առել նրա կատարած արարքի ծանրությունը և նրան արել էր խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում: Շրջկոմի բյուրոն Ս. Բարսեղյանին վտարեց ՍՄԿԿ շարքերից, միաժամանակ նշեց սկզբնական կուսկազմակերպության անսկզբունքային, լիբերալ մոտեցումը:

ՍՄԿԿ շարքերն արժանավոր մարդկանցով համալրելը, կոմունիստի ազնիվ և անաղարտ կերպարի համար պայքարը շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն անխզելիորեն առնչում են ժողովրդատնտեսական կարևոր խնդիրների լուծման հետ: Ամբողջ գործունեության վերակառուցումը տնտեսական և սոցիալական ոլորտներում հաջողություն ապահովելու նախապայմանն է: Այդ լավ են գիտակցում շրջանի կոմունիստները, որոնք մոբիլիզացնում են աշխատավորության ուժերը պլանային առաջադրանքներն անվերապահորեն կատարելու համար: Շրջանի աշխատավորները բարձր ցուցանիշներով եզրափակեցին 1986 թ. տնտեսական տարին: Արդյունաբերության աշխատողները թողարկեցին 9 միլիոն 180 հազար ռուբլու արտապլանային արտադրանք, գյուղատնտեսության աշխատողները կատարեցին անասնապահական և հողագործական բոլոր մթերքների արտադրության և պետական վաճառքի պլանները: Ընթացիկ տարվա համար ստանձնած պարտավորությունները ավելի լարված են: Նախատեսվում է պլանից ավելի թողարկել 5,5 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք, պետությանը վաճառել 100 տոննա միս, նույնքան կաթ, գյուղատնտեսական այլ մթերքներ: Առաջին կիսամյակի արդյունքները վկայում են, որ այդ խնդիրները պատվով կլուծվեն: Առաջընթացին կնպաստի սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների արմատական վերակառուցումը, որի կարևոր բաղադրատարրերն են ՍՄԿԿ շարքերի համալրումը և ըստ ամենայնի ամրապնդումը, արտադրության բոլոր տեղամասերում, հասարակական կյանքի բոլոր օղակներում կուսակցական ազդեցության ուժեղացումը:

Տաշքենդի քաղաքային կուսակցական կազմակերպությունում կուսշարքերի աճի բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, Կենտկոմի հունիսյան պլենումի նոր պահանջները, Հայաստանի կուսկազմակերպության հասցեին արված լուրջ քննադատությունը մեզ համար ուղեցույց են նաև կուսակցությունը արժանավոր մարդկանցով համալրելու գործում: Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները ջանում են կուսակցության մեջ ներգրավել այնպիսի մարդկանց, ովքեր ճիշտ են ընկալում վերակառուցման և արագացման էությունը, բոլոր ուժերով պայքարում դրանց իրականացման համար:

---

խատանքի, ֆիզկուլտուրայի և սպորտի, զվարճալիքների, երեխաների դաստիարակության, սիրողական զբաղմունքների և այլն)։ Արտաաշխատանքային ժամանակի այս երկրորդ խումբն իր նշանակությամբ և դերով ամբողջ ժամանակի բյուջեի ամենակարևոր մասն է։

Սակայն ազատ ժամանակը, հանդիսանալով ամենակարևորը և ամենաարժեքավորը, այնուամենայնիվ, արտաաշխատանքային ժամանակի միմիայն մեկ բաղկացուցիչ մասն է, ուստի այս երկու հասկացողությունները շփոթել չի կարելի, քանի որ նրանք տարբեր են իրենց դերով և նշանակությամբ։

Մարքսը նշել է, որ ազատ ժամանակն այն ժամանակն է, որը նվիրվում է անհատի լիակատար զարգացմանը, այն ծախսվում է ոչ միայն ժամանցի, այլև ավելի վեհ՝ մարդու մտավոր և հասարակական ազատ գործունեության համար, որի ընթացքում տեղի է ունենում նրա բազմակողմանի ընդունակությունների հետագա զարգացումը։

Բնականաբար, չի կարելի ազատ ժամանակ համարել ամբողջ արտաաշխատանքային ժամանակը, քանի որ վերջինիս կազմում կան նաև ժամանակի մի շարք այնպիսի ծախսումներ, որոնք ոչ մի առնչություն չունեն մարդու մտավոր և ֆիզիկական զարգացման, նրա «վեհ գործունեության» հետ։ Արտաաշխատանքային ժամանակի ոչ բոլոր ծախսումներն են, որ ապահովում են մարդու որակական հատկանիշների ներդաշնակ աճը, հոգեկան հարուստ աշխարհի և բարձր մտածելակերպի կազմավորումը, ստեղծում ասպարեզ նրա աշխատուժի ընդլայնված վերարտադրության համար։ Վերցնենք, օրինակ, արտաաշխատանքային ժամանակի այնպիսի ծախսումներ, որոնք գտնվում են «զբաղված ժամանակի» խմբում՝ տնային աշխատանքը, սնվելը, քնելը, աշխատանքի գնալ-գալը, ինքնասպասարկումով կամ անձնական հիգիենայով զբաղվելը և այլն։ Սրանցից ոչ մեկն էլ իրենց բովանդակությամբ չեն ներկայացնում ազատ ժամանակը, քանի որ նրանց նպատակը միայն աշխատավորների ծախսված կենսական ու ֆիզիկական ուժերի վերականգնումն է, նրանց կենսունակությունը և աշխատունակությունը պահպանելը։ Ժամանակի այդ ծախսումները չեն պատճառում ստեղծագործական ուրախություն և չեն նպաստում հոգևոր կուլտուրական աճին, չեն բերում շրջապատի օգուտ ոչ անձամբ իրեն՝ աշխատավորին և ոչ էլ հասարակությանը։ Ավելին, այդ ժամանակն անձի մտավոր և ֆիզիկական բազմակողմանի զարգացման համար դառնում է լիովին կորած ժամանակ։

Հարկ է նաև նկատել, որ ազատ ժամանակը դատարկաբանության, պարապության ժամանակ չէ։ Ընդհակառակը՝ այն արտաաշխատանքային ժամանակի բոլոր բաղկացուցիչ մասերից ամենից հարուստն է իր բովանդակությամբ, հագեցած անձի վեհ գործունեության, մտավոր և ֆիզիկական ներդաշնակ աճի բազմապիսի զբաղմունքներով։ Դա այն ժամանակն է, որը աշխատավորը հատկացնում է ուսմանը, որակավորման բարձրացմանը, ինքնադաստիարակությանը և ինքնակրթությանը, ֆիզկուլտուրայով և սպորտով զբաղվելուն, սիրողական զբաղմունքներին (որսորդություն, ձկնորսություն, նկարչություն, քանդակագործություն և այլն), ակտիվ հանգստին ու արդյունավետ ժամանցին (կինոթատրոն հաճախելը, զբոսանքները և էքսկուրսիաները, տուրիզմը, ստեղծագործական բանավեճերին մասնակցելը, երեխաներին դաստիարակելը և այլն)։ Վերջապես, ազատ ժամանակի մաս են կազմում նաև աշխատավորների հասարակական գործունեությամբ զբաղվելը, իր կոլեկտիվի հասարակական ու տնտեսական կյանքին մասնակցելը և այլն։

Այսպիսով, ակնհայտ է, որ արտաաշխատանքային ժամանակի հասկացողությունն ավելի լայն է, քան ազատ ժամանակինը։ Դրանք տարբերվում են ինչպես ծավալով, այնպես էլ իրենց բովանդակությամբ, ներքին կառուցվածքով, նշանակությամբ և դերով։ Հանրապետությունում աշխատավորների ազատ ժամանակի օգտագործման մասին պատկերացում են տալիս մեր անցկացրած ուսումնասիրությունները Երևանի «Հայէլեկտրալույս», «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումներում և ավտոդողերի գործարանում։

Տվյալները վկայում են, որ աշխատավորների ազատ ժամանակի սահմանափակ չափերի պայմաններում անգամ այդ ժամանակի օգտագործումը ևս չի կարելի համարել ռացիոնալ։ Այսպես, օրինակ, ամբողջ ազատ ժամանակի ամսական ֆոնդի (96 ժամ) մեծ մասը հատկացվում է զանազան զվարճալիքներին (46,5 ժամ)։ Ֆիզկուլտուրային և սպորտին ամսվա ընթացքում միջին հաշվով տրված է 3 ժամ։ Իսկ ինքնադաստիարակությունը, ուսումը և որակավորման բարձրացումը, բոլորը միասին ամսվա ընթացքում կազմում են ընդամենը 21 ժամ։ Շատ քիչ են ժամանակի



ծախսումները (12 ժամ) հասարակական աշխատանքների և երեխաների դաստիարակության նպատակով։ Զվարճալիքների շարքում ամենամեծ տեղը գրավում են հյուր գնալը և ընդունելը, սենյակային խաղերը, որոնք միասին կլանում են 46,5 ժամից 17 ժամը, մինչդեռ կինոթատրոն, համերգ հաճախելու վրա ծախսվում է 15,5 ժամ։

Այս տվյալներից երևում է, որ նշված ձեռնարկությունների աշխատավորների ազատ ժամանակի օգտագործումը դեռևս հեռու է արդյունավետ լինելուց։ Նրանց ազատ ժամանակի առավել ռացիոնալ ու բովանդակալից օգտագործման պրոբլեմը դեռևս պատշաճ ուշադրության չեն արժանացել հասարակական կազմակերպությունների կողմից։ Շատ թերություններ կան աշխատավորների ազատ ժամանակը կազմակերպող և սպասարկող հիմնարկությունների ու կազմակերպությունների գործունեության մեջ (ակումբներ, գրադարաններ, կուլտուրայի ու հանգստի զբոսայգիներ, կինոթատրոններ, ֆիզկուլտ կազմակերպություններ և այլն)։ Մայրաքաղաքի կինոթատրոնների մեծ մասը բացի կինոցուցադրումից, իրենց ընդարձակ ճեմասրահները, դահլիճները չեն օգտագործում ինքնագործունեության համերգների, դասախոսությունների, նշանավոր մարդկանց հետ հանդիպումներ և այդ կարգի այլ միջոցառումներ կազմակերպելու համար, չեն ստեղծում շրջիկ կինոցուցադրումներ բակերում և գործարանային արտադրամասերում, չունեն երեխաների խաղի ու խնամքի սենյակներ։ Հանրապետությունում չկան բակային ակումբներ, իսկ երիտասարդական ակումբ-սրճարանները շատ քիչ են։

Գոյություն ունեցող ակումբները և կուլտուրայի տները, տարվելով վճարովի միջոցառումներով, դեպքից դեպք են կազմակերպում աշխատավորների կոլեկտիվ հանգստի, հետաքրքիր ժամանցի, կենսաթոշակի գնացողներին, անձնագիր ստացողներին նվիրված երեկոներ, ընտանեկան հանդեսներ, «ոսկյա» կամ «արծաթյա» հարսանիքներ և այլն։ Նրանք իրենց միջոցառումների գրաֆիկները կազմելիս հաշվի չեն առնում գործարանների աշխատանքի հերթափոխային բնույթը։ Թանգարանները շատ քիչ են կազմակերպում շրջիկ ցուցահանդեսներ անմիջականորեն գործարանային արտադրամասերում, հանրակացարաններում, մեծ բակերում։ Գրադարաններում չեն կիրառում սպասարկման այնպիսի պրոգրեսիվ ձևեր, ինչպիսիք են բնակարանային շրջիկ ընթերցարանները, գրքանվիրման խրախուսական սիստեմը և այլն։ Հանգստի և կուլտուրայի զբոսայգիները քիչ են կազմակերպում աշխատողների կոլեկտիվ ժամանցի մասսայական միջոցառումներ, ազգային խաղեր ու հանդեսներ, նրանց ատրակցիոնային տնտեսությունն աղքատիկ է, չափազանց քիչ են հեռուստամեքենայական, մաթեմատիկական, լուսաէֆեկտային, երաժշտական և այլ խաղային ու ավտոմատ ատրակցիոնները՝ հատկապես մեծերի համար։ Դեռ վատ հիմքերի վրա է դրված նաև սպորտի խոր արմատավորումը ժողովրդական լայն մասսաների շրջանում, հատկապես ջրային սպորտը, ձմեռային սպորտը, գեղարվեստական մարմնամարզությունը, ալպինիզմը, տուրիզմը և այլն։

Ֆիզկուլտ-սպորտային աշխատանքը ըստ ձեռնարկությունների կազմակերպելու հետևանքով սպորտային միջոցառումներում չեն ընդգրկվում տնային կառավարչությունները, միկրոշրջանները, առանձին բակերը, ինչպես նաև փոքր հիմնարկությունները, գրասենյակները, արտելները, տնային տնտեսուհիները, թոշակառուները և այլն։ Այսպիսով, ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման հարցերը դեռևս չեն գտնվում հիմնարկ-ձեռնարկությունների և հասարակական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում, որի հետևանքով տեղերում աշխատողները շատ քիչ են ներգրավվում կուլտուր-մասսայական միջոցառումների մեջ (թանգարանների, թատրոնների կոլեկտիվ հաճախումներ, հանգստի երեկոներ, տուրիստական արշավներ և այլն)։

Ազատ ժամանակի բացարձակ մեծացման հիմնական ուղին արտաաշխատանքային ժամանակի բաղկացուցիչ մասերի տևողության կրճատումն է։ Անշուշտ, այդպիսի կրճատում չի կարող լինել քնելու և սնվելու ժամանակի հաշվին։ Ուրեմն դա կարող է լինել այն ժամանակի հաշվին, որը ծախսվում է տնային աշխատանքի և երթևեկության վրա։ Այսպես, օրինակ, Երևանի աշխատավորները զգալի չափով ավելորդ ժամանակ են կորցնում միմիայն աշխատատեղ գնալու և վերադառնալու համար։ Դրա պատճառը ոչ միայն տրանսպորտի տակավին անբավարար աշխատանքն է, այլև այն, որ աշխատանքային օրը շատ տեղերում միաժամանակ է սկսվում, քիչ են տրանսպորտի օղակային երթուղիները, վատ են հաշվի առնվում լարված եռուզեռային՝ «պիկ» ժամերը, որ քաղաքում ավտոբուսները և տրոլեյբուս-

ները չեն օգտագործվում կցավագոններով և այլն: Դեռևս զգալի չափերի են հասնում հանդիպական տեղափոխումները (օրինակ, Ջերմուկի ապրողները աշխատանքի են գնում Լենինյան շրջան և հակառակը): Անհրաժեշտ է լրջորեն զբաղվել ոչ միայն տրանսպորտի աշխատանքի կարգավորման, այլև բնակարանների քաղաքային փոխանակումը դյուրացնելու և գործարանների միջև բնակարանային ֆոնդի փոխանակում կատարելու հարցերով: Աշխատավորների ազատ ժամանակի ամենամեծ ռեզերվը, իհարկե, տնային աշխատանքի վրա ծախսված ժամանակի խտացումն է, որը կարող է տեղի ունենալ կենցաղային պրոցեսների հետագա հանրայնացման և տնային աշխատանքների ավելի ռացիոնալացման ու մեքենայացման միջոցով:

ՍՄԿԿ XXVII համագումարում ճշվեց, որ անհրաժեշտ է ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք կնոջը հնարավորություն կընձեռեն օգտագործելու իր իրավունքները, գիտելիքները, ընդունակությունները արտադրության մեջ և հասարակական օգտակար գործունեությունում՝ ընդլայնելով ինտերնատների, մանկապարտեզների, հասարակական սննդի ձեռնարկությունների, կոմունալ սպասարկման հիմնական ցանցը:

Ուսումնասիրությունները վկայում են, որ դեռևս մեծ անելիքներ կան առևտրի, հասարակական սննդի և կոմունալ-կենցաղային սպասարկման օբյեկտների ներքաղաքային ճիշտ տեղաբաշխման, առավել առաջադիմական սպասարկման ձևերի ներդրման, դրանց տեխնիկական բազայի ամրապնդման գործում: Այս և նման խնդիրների ավելի օպերատիվ լուծումը հնարավորություն կընձեռի մեծապես կրճատելու տնային աշխատանքի վրա ավելորդաբար ծախսվող ժամանակը և դրանով իսկ ավելացնելու աշխատավորների ազատ ժամանակը:

Սակայն խնդիրը ոչ միայն ազատ ժամանակի ավելացումն է, առավել կարևոր է ազատ ժամանակի նպատակային և ռացիոնալ օգտագործումը: Եթե այս կամ այն ճանապարհով ավելացված ազատ ժամանակը չի ծառայում աշխատողի մտավոր և ֆիզիկական բազմակողմանի զարգացմանը, հանգիստը խելացիորեն կազմակերպելուն, ապա նման անը կորցնում է իր իմաստը: Աշխատավորների ազատ ժամանակը որքան մտածված օգտագործվի, այնքան մեծ հնարավորություններ կստեղծվեն կատարելագործելու նրանց ապրելակերպը:

Հասարակության հաջող առաջընթացի համար անհրաժեշտ է ակտիվացնել մասսաների կենդանի ստեղծագործությունը, առավելագույն չափով նպաստել սոցիալիստական կարգերի հսկայական հնարավորությունների ու առավելությունների դրսևորմանը, ստեղծել աշխատավորների համար ազատ ժամանակի ավելի մեծ ռեզերվ, խելամտորեն օգտագործել այն:

---



# ՎԱՐՇԱՎԱՅԻ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՄԱՍՆԱԿԻՑ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՌԱԶՄԱԿԱՆ ԴՈԿՏՐԻՆԱՆ ԵՎ ԶԻՆԱԹԱՓՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

**Վ. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

ԴԱՇՆԱԿԻՑ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի՝ սույն թվականի մայիսի վերջին Բեռլինում կայացած խորհրդակցությունում ընդունվեց մի կարևոր փաստաթուղթ՝ «Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինայի մասին»: Այդ փաստաթուղթը արժանացավ աշխարհի գործնականորեն բոլոր երկրների քաղաքական, զինվորական, հասարակական շրջանների ուշադրությանը: Փաստաթղթի նշանակությունը որոշվում է նախ և առաջ այն բանով, որ միջազգային հարաբերությունների ճշգրիտ վերլուծության ու կանխատեսման համար չափազանց անհրաժեշտ է ճիշտ ըմբռնել առանձին պետությունների, նրանց խմբավորումների և ռազմական դաշինքների նպատակներն ու մտադրությունները:

Անցյալի պետությունների ռազմական դոկտրինաները ընդհանուր առմամբ եղել են միանշանակ. արտաքին քաղաքական նպատակների իրականացման, ասենք նաև ամեն մի միջազգային վեճի լուծման լավագույն միջոցը ռազմական ուժի գործադրումն էր: Բայց ժամանակները փոխվում էին, մի պետությանը փոխարինելու էին գալիս մյուսները, հին հասարակական-քաղաքական ֆորմացիաներին հաջորդում էին նորերը, իսկ ուժի պաշտամունքի վրա հիմնված ռազմական կոնցեպցիաները մնում էին նախկինը: Տարբեր ժամանակներում մարդկային հանրությունների առաջնորդների գլխավոր հոգածության առարկան է եղել այն, որ ունենան որքան կարելի է մեծ մահակ, ավելի խոշոր քար, ավելի սուր տապար, ավելի ծանր արկ:

Իսկ ժամանակակից, վերին աստիճանի սուր ու լարված իրադրության մեջ պահանջվում են նոր մոտեցումներ, քաղաքականության նոր փիլիսոփայություն, որոնք մերժեն դարավոր պատկերացումները պատերազմների՝ որպես միջազգային վեճերի լուծման միջոցի, թույլատրելիության ու կիրառելիության մասին: Խտացված ձևով նոր քաղաքական մտածողությունը արտահայտում է մարդկության կոլեկտիվ բանականությունը, ձևավորվում և միջազգային պրակտիկայում արմատավորվում է սոցիալիստական, չմիացած, չեզոք, կապիտալիստական շատ երկրների լայն հասարակայնության շարժման համատեղ ջանքերով: Այդ ջանքերի հիմքն է միջուկային պատերազմի անթույլատրելիության համընդհանուր ճանաչումը: Մ. Ս. Գորբաչովը, խոսելով համաշխարհային հանրությանը համաշխարհային պատերազմների հանգեցրած արատավոր «տրամաբանությունից» հեռացնելու քաղաքական որոնման անհրաժեշտության մասին, այն միտքն է արտահայտել, թե միջուկային պատերազմից հետո ոչ մի պրոբլեմ չի մնա, մարդ չի մնա, որ նստի բանակցությունների ոչ թե սեղանին, այլ կոճղին, քարին: Միջուկային ջրհեղեղից երկրորդ Նոյան տապան չի փրկվի:

Սպառազինությունների մրցավազքի արդի փուլը նրա բոլոր նախորդ փուլերից ունի սկզբունքային ու չափազանց վտանգավոր տարբերություններ: Դա, դժբախտաբար, ամենևին էլ ոչ բոլորն են գիտակցում: Հաճախ, օրինակ, զինաթափման զանազան պրոբլեմների շուրջը կայացած բանակցությունների ընթացքում ես քանիցս առիթ

եմ ունեցել գլխավորապես ՆԱՏՕ-ի երկրների ներկայացուցիչներից՝ զինաթափման այդ «նիհիլիստներից», լսելու լպիրշ կարծիքներ այն մասին, թե պատերազմը մարդու անբաժան ուղեկիցն է, ուրեմն նշանակում է անխուսափելի է մարդու ոչնչացման նորանոր տեսակների ու միջոցների ստեղծումը, կատարելագործումը ու կուտակումը: Սպառազինությունների մրցավազքի գալարագիծը, ասում էին նրանք, այնքան երկար է, որ հազիվ թե դրան որևէ բան ավելացնի նրա մի նոր գալարապտույտը: Սա վտանգավոր մոլորություն է:

Առաջին, սպառազինությունների մրցավազքի ներկա փուլը չափազանց վտանգավոր է նախ և առաջ նրանով, որ այդ հարցում գլխավոր շեշտը դրվում է առաջին հարվածի միջուկային զենքի համակարգերի ստեղծման ու ծավալման վրա, համակարգեր, որոնք արագազդու են, միջուկային մարտալիցքերը ճշտությամբ են հասցնում նպատակակետին և պակաս խոցելի են:

Երկրորդ, միջուկային սպառազինությունների մեծացումը նորագույն հայտնագործությունների ու արդի տեխնոլոգիայի հիման վրա, ներառյալ տիեզերքում և տիեզերքից հարվածներ հասցնելու զենքի համակարգերը, անշեղորեն կհանգեցնեն ռազմական դիմակայունության մակարդակների բարձրացման, իրադրության ապակայունացման: Իրավիճակն աշխարհում կդառնա էլ ավելի պակաս կայուն ու պայթյունավտանգ, քան այժմ է:

Երրորդ, սպառազինությունների մրցավազքի ամեն մի նոր փուլի հետ միջուկային զենքը և մասսայական ոչնչացման մյուս միջոցները կդառնան էլ ավելի բարդ և դրանով իսկ մեծ չափով կմեծանան դրանց սահմանափակման ու կրճատման վերաբերյալ միջազգային համաձայնագրերի մշակման դժվարությունները, կբարդանա վերահսկողության առանց այդ էլ ոչ հասարակ պրոբլեմը:

Մարդկության ողջ բազմադարյան պատմությունը վկայում է, որ սպառազինությունների այս կամ այն տեսակի մրցավազքը վերջին հաշվով պատերազմների կհանգեցնի դրանց օգտագործմամբ: Միջուկային սպառազինությունների անզուսպ մրցավազքը կարող է վերջանալ միայն պատերազմով՝ միջուկային զենքի օգտագործմամբ, որի պատճառած անմիջական վնասվածքներից մարդկության առնվազն կեսը կզրկվի կյանքից: Միջուկային պատերազմի հետևանքներից մեկը կլինի «միջուկային ձմռան» սկսվելը:

ՄԱԿ-ի գլխավոր քարտուղար Պերես դե Կուեյյարի կողմից նշանակված զանազան երկրների ականավոր փորձագետ գիտնականների մի խումբ ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի հերթական նստաշրջանի համար պատրաստում է զեկուցում «միջուկային ձմռան» և շրջակա միջավայրի, էկոնոմիկայի ու մարդկանց առողջության համար նրա հնարավոր հետևանքների վերաբերյալ: Մասնագետները հանգել են այն հետևության, որ մեծ քանակությամբ միջուկային զենքի պայթյուններն ի վիճակի են քայքայելու ստրատոսֆերայի օզոնը, որը Երկրագնդի վրա եղած կյանքը պահպանում է Արեգակի դաժան ուլտրամանուշակագույն ճառագայթման կործանարար ազդեցությունից: Եվ եթե անցյալ տարի դեռ այն կարծիքին էին, որ միջուկային պատերազմի հրդեհներից առաջացած ծխի մասնիկների 90 տոկոսը մթնոլորտ բարձրանալու պրոցեսում կվերածվի տեղումների, ապա այսօր այդ բաժինը գնահատվում է լոկ 10—20 տոկոս: Իսկ դա նշանակում է, որ հսկայական քանակությամբ ծուխ (գիտնականների հաշվումներով 150 միլիոն տոննայից ավելի) կարտամղվի ստրատոսֆերա, որտեղ այն կմնա բազում ամիսներ, իսկ գուցե և տարիներ: Միանգամայն ակնհայտ է, որ մարդու բնակության միջավայրն այնքան կփոփոխվի, որ բոլորովին պիտանի չի լինի մարդու գոյատևման համար:

Բոլոր այս հանգամանքները հրամայական անհրաժեշտություն դարձրին, որ բոլոր պետությունները և ամենից առաջ երկու հակամարտ ռազմաքաղաքական դաշինքների՝ Վարշավայի պայմանագրի կազմակերպության և Հյուսիսատլանտյան պակտի մասնակիցները ընդհանրացված ձևով հստակ, պարզորոշ, հրապարակայնորեն շարադրեն իրենց ռազմական դոկտրինաների սկզբունքային դրույթները:

Իսկ ո՞րն է Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինայի էությունը: Գլխավորապես դա այն է, որ նա ենթարկված է ինչպես միջուկային, այնպես էլ սովորական պատերազմը թույլ չտալու խնդրին: Այդ դոկտրինան ելնում է այն բանից, որ արդի պայմաններում անթույլատրելի է վիճելի հարցի լուծման, այսպես ասած, ավանդական՝ ռազմական ուղու կիրառումը: Միայն



խաղաղ, քաղաքական միջոցներով է հարկավոր լուծել ամեն մի կոնֆլիկտային իրավիճակ:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները ազդարարել են, որ իրենք երբեք, ոչ մի պարագայում ռազմական գործողություններ չեն սկսի որևէ պետության կամ պետությունների դաշինքի դեմ, եթե իրենք չդառնան զինված հարձակման օբյեկտ, և երբեք առաջինը չեն կիրառի միջուկային զենք: Միջուկային զենքը առաջինը չկիրառելու մասին Սովետական Միության միակողմանի պարտավորությունն այժմ արդեն հաստատված է Վարշավայի պայմանագրի բոլոր մասնակիցների կողմից:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինան որոշվում է նրանով, որ այդ պետությունները տերիտորիալ պահանջներ չունեն ոչ մի այլ պետության նկատմամբ ո՛չ Եվրոպայում, ո՛չ Եվրոպայից դուրս և ոչ մի պետության, ոչ մի ժողովրդի չեն վերաբերվում որպես իրենց թշնամու: Աշխարհի բոլոր պետությունների հետ ունեցած իրենց հարաբերությունների հիմքում Վարշավայի պայմանագրի մասնակիցներն առաջարկում են դնել անվտանգության շահերը փոխադարձաբար հաշվի առնելու և խաղաղ գոյակցության սկզբունքները:

Միավորված ազգերի կազմակերպության կանոնադրությունը, Հելսինկիի եզրափակիչ փաստաթուղթը, միջազգային հարաբերությունների ընդհանուր ճանաչում գտած նորմերը տալիս են բոլոր հնարավորությունները՝ պետությունների համապարփակ փոխշահավետ համագործակցությունը զարգացնելու և վիճելի հարցերը առանց ռազմական ուժի գործադրման լուծելու համար:

Դրա հետ մեկտեղ Բեռլինում ընդունված փաստաթուղթը վկայում է, որ դաշնակից սոցիալիստական պետությունների դիրքորոշումն ընդհանուր ոչինչ չունի բուրժուական անատամ պացիֆիզմի հետ: Այդ երկրները պատրաստ են պաշտպանելու իրենց:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինան ռեալիզմի դոկտրինա է, այն կառուցված է միջազգային ասպարեզում ստեղծված ուժերի հարաբերակցությունը օբյեկտիվորեն հաշվի առնելու վրա, միջազգային գործերում ռազմական ուժին, միջուկային զենքի կիրառման թույլատրելիությանը ապավինելու՝ ամբողջ մարդկության համար աղետալի հետևանքների գիտակցման վրա: Այդ դոկտրինան նոր մտածողության դրսևորումն է համաշխարհային գործերում:

Պետությունների հարաբերությունների կարգավորման մեթոդներին սկզբունքորեն այլ դիրքերից են վերաբերվում առաջատար կապիտալիստական երկրների շատ պարագլուխներ: Քաջ հայտնի են, օրինակ, Սպիտակ տան ներկայիս տիրոջ արտահայտած մտքերն այն մասին, որ Միացյալ Նահանգները «պետք է խաղաղությունը կառուցեն ուժի հիման վրա, որ խաղաղությունը պետք է հիմնված լինի ուժի վրա»: Նույնպիսի տեսակետ է պաշտպանում նաև Անգլիայի պրեմիեր մինիստր Մ. Թետչերը, որը ամեն կերպ գովաբանում է միջուկային զենքը, որի առկայությունն, իբր, խաղաղության պահպանության լավագույն երաշխիքն է: ԳՖՀ-ի կանցլեր Հ. Կոլը, խոսելով նոր մտածողության ոգով գործելու պատրաստակամության մասին և խոսքով ողջունելով Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների՝ միջազգային անվտանգության համապարփակ համակարգ ստեղծելու կոչը, այնուհանդերձ պաշտպանում է «միջուկային զսպման» հնացած, ուժային քաղաքականության վրա հիմնված դոկտրինան: Ավելին, արևմտագերմանական կանցլերի կարծիքով, այսպես կոչված, «ճկուն արձագանքման նատօյական կոնցեպցիան, որը նախատեսում է ինչպես միջուկային, այնպես էլ սովորական սպառազինությունների կիրառում, տեսանելի ապագայում այլընտրանք չունի:

Թեև ՆԱՏՕ-ի ռազմական դոկտրինայի ջատագովները պնդում են, որ այդ դոկտրինան միայն մի նպատակ ունի՝ «վախեցնել» պոտենցիալ ագրեսորին, աշխարհը փրկել պատերազմից, իրականում զսպման դոկտրինան, ինչպես և «ահաբեկման», «ճկուն արձագանքման», «սարսափի հավասարակշռության» կոնցեպցիան ելնում են ուժի կիրառման, մեկ պետության՝ մեկ ուրիշի վրա հարձակվելու հնարավորությունից և տանում են դեպի միջազգային լարվածության անզուսպ սրում, իսկ միջուկային զենք ունեցող պետությունների հարաբերություններում՝ դեպի միջուկային պատերազմ:

Այս բոլոր դոկտրինաների ու կոնցեպցիաների աքիլեսյան գարշապարն այն է, որ դրանք, չվերացնելով, այլ ընդհակառակը, մեծացնելով պատերազմների առաջացման վտանգը, գործնականում պահանջում են ավելի ու ավելի շատ զենք, պահանջում են ստեղծել «գերզենքի» նոր տեսակներ ու համակարգեր, ինչը պատասխան

միջոցներ է առաջացնում մյուս կողմում, և, վերջին հաշվով, հանգեցնում է սպառազինությունների մրցավազքի հետագա էսկալացիայի: «Զսպման քաղաքականությունը՝ դիտված պատմական հեռանկարում,— ընդգծում է Մ. Ս. Գորբաչովը,— ոչ միայն չի վերացնում, այլ նույնիսկ մեծացնում է ռազմական կոնֆլիկտների հնարավորությունը»:

Միլիոնավոր մարդիկ ամբողջ աշխարհում, այդ թվում և ԱՄՆ-ում, ավելի պարզորոշ տեսնում են, թե միջուկային զինաթափման, համընդհանուր անվտանգության ամրապնդման ճանապարհին ինչպիսի արգելապատնեշներ կարող է ստեղծել նոր «գերզենքի» ստեղծման պլանների, և առաջին հերթին տիեզերքում տեղաբաշխելու համար նախատեսված զենքի, այսպես կոչված, ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության ծրագրի իրագործումը: Եվ այնուհանդերձ, ամերիկյան վարչակազմը իր դաշնակիցների հետ միասին շարունակում է հռչակել իր նվիրվածությունը «միջուկային զսպմանը» և արագացնում է ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության ծրագրի իրականացումը:

«Միջուկային զսպման» կոնցեպցիան մի կողմ ևս ունի: Որքան ավելի շատ է միջուկային զենքը, որքան ավելի բարդ են արագ գործող ավտոմատ համակարգերը, կոմպյուտերները, որոնք ապահովում են այդ զենքի արձակումն ու կիրառումը, այնքան ավելի քիչ են միջուկային զենքի «հնազանդ» վարքի հնարավորությունները: Կարելի է համարձակ ասել, որ ինչքան ավելի մեծ են միջուկային զենքի համաշխարհային զինանոցները, այնքան ավելի մեծ է դրանց ճակատագրական խափանման հավանականությունը:

Սրանից ինքնաբերաբար բխում է մի հետևություն՝ «միջուկային զսպման» կոնցեպցիան հին մտածողության, միջազգային գործերը վարելու նկատմամբ հին մոտեցման վերապրուկ է: Դա վկայում է այն վտանգավոր խզման մասին, որ գոյություն ունի միջուկային դարի իրողությունների և առաջատար կապիտալիստական տերությունների պարագլուխների կողմից աշխարհի առջև ծառացած՝ միջազգային անվտանգության ամրապնդման և միջուկային պատերազմի կանխման խնդիրների ըմբռնման միջև:

Միջուկային վտանգը բոլոր պետություններին, չնայած նրանց սոցիալական կարգին, պաշտպանական պոտենցիալին, աշխարհագրական դիրքին, մի առումով հավասարեցրել է՝ միջուկային պատերազմում ոչ մեկին չի հաջողվի մի կողմ քաշված մնալ և օգուտ քաղել ուրիշների դժբախտության հաշվին: Այստեղից բխում է մի կարևոր հետևություն՝ մեր ժամանակներում չի կարող լինել մի պետության հուսալի անվտանգություն մեկ ուրիշի հաշվին, ռազմաքաղաքական մի դաշինքի անվտանգություն՝ մեկ ուրիշի հաշվին: «Միատեսակ անվտանգությունը ժամանակի տիրական թելադրանքն է,— ընդգծվում է կուսակցության XXVII համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ:— Եվ դրա ապահովումն ավելի ու ավելի շատ է դառնում քաղաքական խնդիր, որը կարելի է լուծել միայն քաղաքական միջոցներով: Ժամանակն է պետությունների հարաբերությունները դնել ավելի ամուր հիմքի վրա, քան զենքն է: Մենք այլընտրանք չենք տեսնում և չենք փնտրում» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 478):

Բեռլինում ընդունված փաստաթղթում Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները հայտարարեցին, որ իրենց առաջնահերթ պարտքն են համարում ապահովել դաշնակից սոցիալիստական երկրների ժողովուրդների անվտանգությունը: Բայց դա, հասկանալի է, ոչ թե ուրիշ ժողովուրդների ու պետությունների անվտանգության հաշվին: Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները ավելի մեծ անվտանգության չեն հավակնում, քան ունեն մյուս երկրները, բայց և պակաս անվտանգությունն էլ չեն հանդուրժի:

Արդի քաղաքական կյանքի օբյեկտիվ իրողությունը ստեղծված ռազմաքաղաքական զուգակշռությունն է: Բայց դա, ըստ էության, ընդունվում է ոչ ամենուրեք: Լայն ճանաչում է ստացել նաև մեկ այլ հիմնադրույթ. ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև, Վարշավայի պայմանագրի կազմակերպության և ՆԱՏՕ-ի միջև ստեղծված զուգակշռության խախտումը ոչ միայն ապակայունացնում է նրանց միջև եղած հարաբերությունները, այլ բացասաբար կանդրադառնա նաև ամբողջ միջազգային հարաբերությունների վրա, կհանգեցնի ողջ համաշխարհային իրադրության լուրջ սրման: Համաշխարհային ասպարեզում վճռական կերպով կազդի նաև գոյություն ունեցող զուգակշռության մակարդակի բարձրացումը, քանի որ այն կնշանակի սպառազինությունների մրցավազքի հետագա ծավալում:

Դրա հետ մեկտեղ գոյություն ունեցող զուգակշռության պահպանումը ինքնա-



նպատակ չէ: Դաշնակից սոցիալիստական պետությունները կողմնակից են, որ անհապաղ սկսեն ցած թեքել սպառազինությունների մրցավազքի կորագիծը, աստիճանաբար իջեցնեն ռազմական դիմակայության մակարդակը:

Ինչպես համընդհանուր անվտանգության, այնպես էլ յուրաքանչյուր առանձին պետության անվտանգության լավագույն նյութական երաշխիքը, որը ֆիզիկական արգելապատնեշ կստեղծի պատերազմների հանդեպ, զինաթափումն է: Դրանով է բացատրվում նաև այն, որ իրենց ռազմական դոկտրինայի պաշտպանողական էությանը համապատասխան Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները մի ամբողջ շարք գործնական առաջարկներ արեցին սպառազինությունների սահմանափակման, զինաթափման բնագավառում: Դրանց շարքում կենտրոնական տեղ են գրավում միջուկային զինաթափման վերաբերյալ առաջարկները: Այդ ուղղությամբ նախասկզբնական քայլը կլիներ, Բեռլինի խորհրդակցության մասնակիցների կարծիքով, միջուկային զենքի փորձարկումների արգելումը: Ավելի քան երեք տասնամյակ է անցել այն պահից, երբ Ջավահարլալ Ներուի նախաձեռնությամբ այդ հարցը դրվել է համաշխարհային հանրության քննարկմանն ու լուծմանը: Բայց այն իր հրատապությունը չի կորցրել նաև այժմ, քանի որ փորձարկումների արգելումը մի ծանրակշիռ միջոցառում կլիներ միջուկային սպառազինությունների մշակումը, արտադրությունն ու կատարելագործումը դադարեցնելու, դրանք փուլ առ փուլ կրճատելու, լրիվ վերացնելու գործում:

Չի կարելի ասել, թե բոլոր անցած տարիների ընթացքում ոչ մի արդյունք ձեռք չի բերվել: 1963 թվականին Մոսկվայում ստորագրվեց պայմանագիր երեք միջավայրում՝ մթնոլորտում, տիեզերքում և ջրի տակ միջուկային զենքի փորձարկումներն արգելելու մասին, իսկ 1974—1976 թվականներին սովետա-ամերիկյան կարևոր պայմանագրեր ստորագրվեցին միջուկային զենքի ստորգետնյա փորձարկումները սահմանափակելու և խաղաղ նպատակներով ստորգետնյա միջուկային պայթեցումների վերաբերյալ, որոնք, ճիշտ է, ամերիկյան վարչակազմի մեղքով դեռևս վավերացված չեն:

Միջուկային զենքի փորձարկումների արգելմանը նվիրված են եղել բազմաթիվ երկկողմ (ՍՍՀՄ, ԱՄՆ), եռակողմ (ՍՍՀՄ, ԱՄՆ, Անգլիա) և բազմակողմ բանակցություններ: Տողերիս հեղինակին վիճակվել է մասնակցել դրանցից շատերին: Այդ բանակցություններից ստեղծված հիմնական տպավորությունը միանշանակ է՝ պետությունների նշանակալի մեծամասնությունը (սոցիալիստական, չմիացած և կապիտալիստական շատ պետություններ) վճռականորեն ու հետևողականորեն հանդես են գալիս այդ պրոբլեմի ամենաարագ լուծման օգտին: Ամերիկայի Միացյալ Նահանգների մեղքով է, որ մինչև այժմ համաձայնություն ձեռք չի բերվել միջուկային փորձարկումների լրիվ ու ընդհանուր արգելման վերաբերյալ: Այդ կապակցությամբ Վաշինգտոնի օբստրուկցիոնիզմն արդարացնելու համար ինչ տեսակ փաստարկներ ասես չի վիճակվել լսել ամերիկյան տարբեր ներկայացուցիչներից՝ այդ միջոցառման անժամանակ լինելը, փորձարկումների արգելման նկատմամբ վերահսկողության արդյունավետ միջոցների իրականացման անհնարինությունը և այլն, և այլն:

Իսկ իրականում միջուկային փորձարկումների արգելման հարցի լուծմանը ԱՄՆ-ի ցուցաբերած դիմադրության պատճառն այն է, որ միջուկային փորձարկումներն անհրաժեշտ են Պենտագոնի զանազան լայնամասշտաբ ծրագրերը և առաջին հերթին ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության ծրագիրն իրականացնելու համար: ԱՄՆ-ի ներկայացուցիչները ապարդյուն կերպով խորամանկությունների են դիմում տարբեր մակարդակներում՝ ՄԱԿ-ում, զինաթափման Ժնևի կոնֆերանսում և միջազգային այլ համաժողովներում: Սակայն նրանց չի հաջողվում խույս տալ պետությունների ամենալայն շրջանի սուր քննադատությունից: Այդ հարցի լուծման ուղեփակումը առավել ևս անթույլատրելի է, քանի որ շատ երկրներ համաշխարհային հանրության քննարկմանն են ներկայացրել կոնկրետ առաջարկներ, այդ թվում և համապատասխան միջազգային համաձայնագրերի նախագծեր, որոնք ուղղված են միջուկային փորձարկումների համապարփակ արգելմանը: Եվ սոցիալիստական երկրները, ներառյալ Սովետական Միությունը, իրենց լուման են մուծել այդ գործում: Այսպես, 1982 թվականին ՍՍՀՄ-ը առաջարկեց միջուկային զենքի փորձարկումների լրիվ ու համընդհանուր արգելման պայմանագրի նախագիծ, իսկ սույն թվականի հունիսին սոցիալիստական երկրները հանդես եկան նոր նախաձեռնությամբ: Նրանք Ժնևի զինաթափման կոնֆերանսի քննարկմանը ներկայացրին «Միջուկային զենքի

տական կուսակցության միջև գործարար կոնտակտներ են հաստատվել այդ հարցի վերաբերյալ: Դաշնակից սոցիալիստական երկրների առաջարկների իրականացումը խոշոր գործոն կլիներ Եվրոպական մայրցամաքում կայունությունն ամրապնդելու հարցում:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների և ՆԱՏՕ-ի պետությունների փոխադարձ հրաժարումը ռազմական ուժի գործադրումից և խաղաղ բարիդրացիական հարաբերություններ պահպանելու մասին փոխադարձ պարտավորություններ ընդունումը կստեղծեր միմյանց վստահելու նոր, Եվրոպայի բազմադարյա պատմության մեջ չտեսնված կլիմա, որը կլիներ նոր քաղաքական մտածողության դրսևորումը միջուկատիեզերական դարում:

Ընթանալով այդ ուղիով, կարելի կլիներ վերացնել Եվրոպայի շարունակվող պառակտումը հակադիր ռազմական բլոկների, միաժամանակ արձակել Հյուսիսատլանտյան դաշինքը ու Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը և, վերջին հաշվով, ստեղծել միջազգային անվտանգության համապարփակ համակարգ: Այս է դաշնակից սոցիալիստական պետությունների խոր համոզմունքը, որը հնչեց Բեռլինի խորհրդակցությունում:

«Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինայի մասին» փաստաթղթում հատուկ ուշադրություն է նվիրված զինաթափման բնագավառում միջոցառումների իրականացման նկատմամբ վերահսկողության հարցերին: Եվ դա պատահական չէ: Բանն այն է, որ զինաթափման մասին բանակցությունների ամբողջ հետպատերազմյան պատմության ընթացքում ԱՄՆ-ը ու նրա դաշնակիցները շարունակ չարաշահությամբ են զբաղվել: Նրանք առաջադրում էին վերահսկողության այնպիսի միջոցներ, որոնք ակնհայտորեն անընդունելի էին բանակցությունների մյուս մասնակիցների, մասնավորապես, Սովետական Միության համար: Վերահսկողության բնագավառում արևմտյան երկրների առաջարկած միջոցները հաճախ ընդհանուր ոչինչ չէին ունենում բանակցությունների առարկայի հետ, զենքի այն տեսակի հետ, որը ենթադրվում էր սահմանափակել կամ վերացնել: Նման տակտիկայի նպատակը պարզ է՝ բանակցություններում պարտնյորի անհամաձայնությունը պրովոկացիոն ձևով ներկայացնել որպես հրաժարում վերահսկողության առաջարկվող միջոցներից, իսկ ապա նրա վրա բարդել համաձայնություն ձեռք բերելու անհնարինության ողջ պատասխանատվությունը:

Դրա հետ մեկտեղ պետք է նկատել, որ Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների դիրքորոշումը լայն աջակցություն չէր վայելում, երկրներ, որոնք ակնհայտ նախապատվությունը տալիս էին վերահսկողության ազգային միջոցներին և միջազգային տեսչությունը տեղերում ընդունելի էին համարում միայն կամավոր հիմքի վրա:

Սոցիալիստական երկրների նոր քաղաքական մտածողությունը սահմանեց նաև նոր մոտեցումներ վերահսկողության միջոցների նկատմամբ: Ազգային տեխնիկական միջոցների և միջազգային պրոցեդուրաների զուգակցումը, ներառյալ համապատասխան միջազգային մարմինների ստեղծումը, ռազմական ինֆորմացիայի փոխանակումը, տեսչությունների իրականացումը տեղերում՝ այս է վերահսկողության այն միջոցների թվարկումը, որ առաջարկում են սոցիալիստական երկրները: Զինաթափման բոլոր ուղղություններում՝ միջուկատիեզերական բնագավառում, միջուկային փորձարկումների արգելման, քիմիական և այլ տեսակի զենքերի վերացման բնագավառում սոցիալիստական երկրները հանդես են գալիս ստուգման ամենախիստ միջոցների կոմպլեքսի մշակման օգտին՝ սպառազինությունների կրճատման բոլոր փուլերում: Այսպես, քիմիական զենքի բնագառավում նրանք առաջարկում են միջազգային վերահսկողություն իրականացնել քիմիական զենքի պաշարների ոչնչացման նկատմամբ, այդ զենքի պատրաստման արդյունաբերական բազայի վերացման, առևտրական արդյունաբերության մեջ քիմիական զենք չարտադրելու նկատմամբ և ապագա համաձայնագրի մի շարք այլ դրույթներ:

Հրթիռամիջուկային զենքի բնագավառում ևս վերահսկողությունը պետք է ապահովված լինի արդյունավետորեն, հուսալիորեն և համատարած կերպով՝ հրթիռների պահպանման ու դրանց ոչնչացման վայրերում, զինափորձարաններում և ռազմական բազաներում, ուսումնական կենտրոններում, պահեստներում և այդ զենքը պատրաստող գործարաններում:

Վերահսկողության հարցերի վերաբերյալ սոցիալիստական երկրների ցուցաբերած նոր, համարձակ դիրքորոշումը զինաթափման բանակցություններում արևմըտյան պետություններին զրկեց նրանց «հաղթաթղթից», որի օգնությամբ նրանք քանի տասնյակ բանակցություններ են խափանել: Այժմ նրանց ներկայացուցիչները ի պատասխան սոցիալիստական երկրների առաջարկությունների, ավելի ու ավելի հաճախ են պայքարում վերահսկողության ավելի «չափավոր», «զգուշավոր», «անբռնադատելի» միջոցների համար:

Ամբողջ աշխարհում մեծ հետաքրքրություն առաջացրեց Բեռլինում արված մի առաջարկություն ևս՝ արդեն ընթացիկ տարում կոնսուլտացիաներ անցկացնել Վարշավայի պայմանագրի պետությունների և ՆԱՏՕ-ի երկրների միջև՝ երկու դաշինքների ռազմական դոկտրինաները համադրելու նպատակով: Ընդ որում նկատի է առնվում հասնել առավել փոխըմբռնման, վերացնել փոխադարձ կասկածամտությունն ու անվստահությունը, ապահովել, որպեսզի ռազմաքաղաքական դաշինքների ու դրանց մասնակիցների ռազմական կոնցեպցիաներն ու դոկտրինաները խարսխված լինեն պաշտպանողական հիմունքների վրա:

Բեռլինի խորհրդակցության մասնակիցների առաջարկած կոնսուլտացիաների առարկա կարող էին լինել սպառազինությունների և զինված ուժերի առանձին տեսակների գծով ստեղծված անհաշվեկշռությունները ու անզուգաչափությունները և դրանց վերացման ուղիների որոնումը: Եվ այս միտքը ընդհանուր առմամբ դրական արձագանք գտավ Արևմուտքում:

Ինչի՞ մասին է վկայում դաշնակից սոցիալիստական պետությունների նոր նախաձեռնությունը, պետություններ, որոնք մշակել ու ընդունել են «Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինայի մասին» փաստաթուղթը: Նախ և առաջ նրանց քաղաքական բարձր պատասխանատվության մասին իրենց երկրների ժողովուրդների և համայն մարդկության բախտի համար:

Այժմ, երբ ընդհանուրի կարծիքով միջուկային պատերազմում հաղթողներ չեն լինի, ռազմական դոկտրինաները պետք է նպատակամղված լինեն միջուկային պատերազմի կանխմանը, միջազգային անվտանգության համապարփակ համակարգի ստեղծմանը:

Մարդկության առջև ծառացած է մի անհետաձգելի խնդիր՝ փոխադարձ շահերը հաշվի առնելու հիման վրա բանակցություններ սկսել մեր ժամանակի ամենահրատապ պրոբլեմի շուրջը: Կարելի էր սպասել, որ Հյուսիսատլանտյան դաշինքի ղեկավարների կողմից, որոնք քանիցս հայտարարել են միջազգային երկխոսությանը իրենց նվիրվածության մասին, կհետևի արագ դրական ռեակցիա: Այդ բանը, սակայն, տեղի չունեցավ: Թեև ՆԱՏՕ-ի պաշտոնական ներկայացուցիչները ողջունել են Վարշավայի պայմանագրի կազմակերպության ՝պատրաստակամությունը՝ բանակցություններ վարել սովորական սպառազինությունների մի շարք տեսակների գծով ստեղծված անհամամասնությունները վերացնելու նպատակով, նրանք դրա հետ միասին հակացրին, որ այս տարի պատրաստ չեն լինի բանակցություններ վարելու:

Արևմուտքում առանձին ձայներ են լսվում նաև ընդհանրապես Բեռլինի խորհրդակցության մասնակիցների առաջարկությունների քննարկման դեմ, քանի որ դրանք իբր վկայում են Վարշավայի պայմանագրի կազմակերպության ռազմական թուլության մասին:

Դաշնակից սոցիալիստական պետությունների շահագրգռվածությունը բանակցություններ վարելու, կոմպրոմիսներ որոնելու գործում բացատրվում է, իհարկե, ոչ թե նրանց թուլությամբ: Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ փոխադարձ կոմպրոմիսներն ու զիջումները քաղաքականության մեջ որոշվում են կոնկրետ իրադրությամբ և ուժերի ստեղծված հարաբերակցությամբ: Կոմպրոմիսի դիմելու հնարավորության հարցը լուծելիս Վ. Ի. Լենինն այն համոզմանն էր, որ ամեն ինչ կախված է այն բանից, թե ինչպիսի համաձայնագիր և ինչ հանգամանքներում է կնքվում: Մասնավորապես նա մատնանշում էր, որ երբեմն «ավելի մեծ չարիքից խուսափելու համար զիջում է արվում» (**ԵԼԺ**, հ. 8, էջ 451):

Արդի դարաշրջանում մարդկության համար ամենամեծ չարիքը սպառազինությունների մրցավազքի էսկալացիան է, միջուկային պատերազմը: Բեռլինում դաշնակից սոցիալիստական երկրների առաջադրած առաջարկություններն ուղղված են համայն մարդկության համար կործանարար այդ հեռանկարը կանխելու նպատակին: Պատերազմներ վարելու դոկտրինաներից ու կոնցեպցիաներից անցումը բանակցություններ վարելու, վիճելի հարցերի փոխադարձաբար ընդունելի լուծումներ որոնելու դոկտրինաներին՝ մարդկության առջև ճանապարհ կբացի դեպի միջուկազերծ աշխարհ, անծայրածիր հեռանկարներ կստեղծի հանուն միջազգային լայն համագործակցության, հանուն կյանքի Երկրագնդի վրա:

# ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՇԱՀԵՐԻ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ «ՄԱՍՆԱՎՈՐ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆ՝ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ» ԾԳՆԱԺԱՄԻ ՍՐՈՒՄԸ

**Ն. ԿԵՅԶԵՐՈՎ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐՈՒՄ և հետևություններում խորապես բացահայտված են արդի կապիտալիզմի հակասությունների համակարգի անհաշտելի բնույթը, հեղափոխական վերափոխումների, դասակարգային պայքարի ուժեղացման, կապիտալի աշխարհում սոցիալական հակամարտությունների սրման անխուսափելիությունը, գաղափարների պայքարում մարքսիզմ-լենինիզմի հարձակողականության անհրաժեշտությունը: Հոկտեմբերի սկսած գործը արդի պայմաններում շարունակում է ՍՄԿԿ-ն, ինչպես շեշտվում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ: Միջազգային ասպարեզում իրադարձությունների զարգացումը հաստատում է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը համաշխարհային հեղափոխական պրոցեսի անհաղթահարելիության մասին:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումի նյութերում և որոշումներում սահմանված ու կոնկրետացված են կուսակցության գաղափարաքաղաքական աշխատանքի խնդիրները, այդ թվում և բուրժուական պրոպագանդայի քննադատության ուժեղացման վերաբերյալ, որը փորձում է սովետական մարդկանց վարակել կյանքի նկատմամբ սպառողական վերաբերմունքի բացիլներով, խարխլել ու կոռոզիայի ենթարկել սոցիալիզմի հիմնարար բարոյական արժեքները, խանգարել աշխատանքի դերի բարձրացման պրոցեսը (տե՛ս **ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումի նյութերը**, էջ 11—13): Հակակոմունիստական պրոպագանդայում առանձնահատուկ տեղ է գրավում սոցիալիզմին ներհատուկ անձնական և հասարակական շահերի միասնության խեղաթյուրումը, ձգտումը՝ ստեղծել հասարակական գործերի նկատմամբ հետաքրքրության անկում, հոգևոր սնանկության և հոռետեսության դրսևորումներ, աշխատանքի բարոյական խթանների դերի նվազում» (նույն տեղը, էջ 16), առաջ բերել սպառողականության, մարտնչող ցինիզմի ալիք, սոցիալական բարքերի անկում, արմատավորել մասնավոր սեփականատիրական շահերի ու ձգտումների նախապատվության բուրժուական մոդելը՝ որպես ապրելակերպի ու վարքագծի նորմ: Բուրժուական պրոպագանդայի այդ անչափ վտանգավոր ուղղության մերկացման նշանակությունը հատկապես աճում է այժմ՝ Մեծ հոկտեմբերի 70-ամյակի նախօրյակին, նրա ակտիվացման պայմաններում:

Կ. Մարքսը գրել է, որ մարդու կողմից մարդու շահագործումը կապիտալիստը՝ որպես որոշակի դասակարգային հարաբերությունների ու շահերի մարմնավորող ու կրող, պայքարի ասպարեզ է հանում «մարդկային հոգու ամենակատաղի, ամենաստոր ու ամենանողկալի կրքերը՝ մասնավոր շահի ֆուրիան» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, с. 10): Կապիտալիզմը խարանող այդ բնութագրի արտահայտման պահից ի վեր շատ ժամանակ է անցել, բայց կապիտալիստական ֆուրիաների ախորժակները, հակառակ մարդասիրական կապիտալիզմի մասին եղած առասպելներին, ծավալվում էին անընդհատ հարստություն դիզելու ավելի ու ավելի անզուսպ ու մոլեգին կրքի ուղղությամբ: Մասնավոր նախաձեռնությունը դարձել է առավել հակամարդկային, ինչպես այդ մասին վկայում են զենքի ֆաբրիկանտե-



րների գերշահագործման նորագույն եղանակներն ու չարագուշակ գործունեությունը:

Մասնավոր սեփականատերը հազվագյուտ ակտիվություն ու հնարագիտություն է ցուցաբերում, երբ խոսքը վերաբերում է նրա տնտեսական շահերին. «Պետության բոլոր օրգանները դառնում են ականջներ, աչքեր, ձեռքեր ու ոտքեր, որոնց միջոցով անտառատիրոջ շահը լսում է, դիտում, գնահատում, պահպանում, բռնում, վազվզում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Երկեր**, հ. 1, «Հայաստան» հրատ., 1985, էջ 156): Հարստացման մոլուցքով տարված մասնավոր սեփականատերն այսօր ևս մի «նախաձեռնություն» մյուսի հետևից է առաջադրում՝ դիմում է դատական պրոցեսի իրավաբանական խորամանկություններին և ոստիկանական-վարչական կոպիտ ռեպրեսիաներին: Մոնոպոլիաները իշխանությունը դարձնում են իրենց ստորաքարշ ծառան՝ վարձկանների, փաստաբանների, պաշտոնյաների, ամեն գույնի բյուրոկրատների անհամար բանակի հետ միասին, որոնք, կապիտալի շահերին պաշտպան կանգնած, իրենց հերթին առատորեն ծնում են «նախաձեռնողական» առաջարկություններ, հանձնարարականներ, որոշումներ, դատավճիռներ: Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը իրենց աշխատություններում բացահայտել են կապիտալի ու մասնավոր նախաձեռնության շահերի անատոմիան՝ հավելյալ արժեքի ամեն գնով շահույթ կորզելու իրենց անզուսպ ծարավով:

Ներկայիս արևմտյան տեսաբանները, որոնք մեծ կրքոտությամբ դատողություններ են անում «բիզնեսի հասարակական առաքելության» մասին, ամենևին չեն հիշում այդ հարցի վերաբերյալ մարքսիստների, ուտոպիստ-սոցիալիստների կողմից մասնավոր սեփականության մերկացման ավանդույթի, անգլիական քաղաքատնտեսության դասականների դրույթների մասին: Այնինչ, դեռ Ադամ Սմիթն է նշել բուրժուազիայի նպատակների անհամատեղելիությունը հասարակական բարօրության հետ: «Առևտրի կամ արդյունաբերության որևէ ճյուղում իրենց կապիտալը գործադրողների մասնավոր շահերը,— գրել է նա,— միշտ էլ ինչ-որ առումով տարբեր են հասարակության շահերից և անգամ հակադիր են դրանց»: Սմիթը կապիտալի սեփականատերերին բնութագրել է որպես «այն մարդկանց դասակարգ, որոնց շահերը երբեք ճշտորեն չեն համընկնում հասարակության շահերին՝ մարդկանց, որոնք սովորաբար շահագրգռված են այն բանում, որ խաբեն հասարակությանը և նույնիսկ ճնշեն նրան, և որոնք այդ պատճառով էլ շատ հաճախ խաբել են նրան ու ճնշել (մեջբերումն ըստ К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 36, с. 328—329):

Իր օբյեկտիվ էությամբ կապիտալն ամենից ավելի քիչ է ունակ հասարակական նախաձեռնության, այսինքն՝ հասարակության շահերից բխող գործունեության: Պատմական առումով կարելի է բերել անթիվ անհամար փաստեր ու օրինակներ՝ հաստատելու համար կապիտալիզմի ջատագովների կողմից խնամքով թաքցրած այն ճշմարտությունը, որ հանուն իր եսասիրական ու ընչաքաղց շահերի, բուրժուան պատրաստ է ամեն տեսակ հանցագործության, դիմում է անգամ ազգային դավաճանության: Անցյալ դարում ֆրանսիական բուրժուազիայի կառավարող շրջանները կապիտուլյացիայի ենթարկվեցին «երկաթե կանցլերի» էքսպանսիոնիզմին, Փարիզի կոմունայի հանդեպ ունեցած անասնական սարսափից դրդված կատարեցին հրեշավոր ազգային դավաճանության ակտ՝ երկիրը հանձնելով պրուսական հրոսակախմբերի հոշոտմանը: Ֆրանսիայի խոշոր բուրժուազիայի հետադիմական վերնախավը 1940 թվականին նորից անարգանքի ենթարկեց ազգային շահերը և դավաճանաբար Փարիզի ճանապարհը բաց արեց ֆաշիստական զորքերի առջև: «Հինգերորդ զորասյունը» բավական եռանդուն համագործակցում էր թշնամու հետ «տարօրինակ պատերազմի» ժամանակաշրջանում և հետագայում, գերմանական մռայլ օկուպացիայի ողջ ընթացքում վիշիականներն ու բոլոր երանգի գործակիցները հանդես էին գալիս որպես հիտլերյան դահիճների կամակատարներ: Ազգային շահերի դավաճանության պաթոլոգիական հակումը բուրժուազիայի տարբերիչ գիծն է ընդհանրապես: Վ. Ի. Լենինը գրել է. նա «հայրենիքի, ժողովրդի և ցանկացած ամեն բանի շահերից ավելի բարձր է դասում աշխատավորների դեմ ուղղված բոլոր երկրների կապիտալիստների հետ իր ունեցած դաշինքի պահպանությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 403):

Ինչպես հայտնի է, սոցիալիստական հեղափոխությունից առաջ, 1917 թվականին Ռուսաստանում Կոռնիլովը, իսկ ապա Կերենսկին փորձում էին Պետրոգրադը հանձնել կայզերական զորքերին, որպեսզի արյան մեջ խեղդեին ու գլխատեին աշխատավորների ազատագրական շարժումը:

Առաջին համաշխարհային պատերազմից հետո ամերիկյան դոլարների «ոսկե

անձրևը» տեղաց գերմանական արդյունաբերության այն ճյուղերի վրա, որոնք կազմեցին ֆաշիստական պետության ռազմաարդյունաբերական կոմպլեքսի հիմքը և խթանեցին նացիզմի ապագա ագրեսիվ «նախաձեռնությունները»: «Արևմտյան դեմոկրատիայի հայրերի» հանցավոր «մյունխենյան գործարքը» ֆաշիզմի պարագլուխների հետ պատմության մեջ մտել է որպես քաղաքական կուրության և ազգային շահերն անարգելու ծայրագույն աստիճան: 1985 թվականի մայիսին հետադիմական քաղաքական շրջանների նախաձեռնությամբ Բիտբուրգ (ԳՖՀ) քաղաքում կայացած «ֆաշիզմի հետ հաշտեցումը» բազմաթիվ զայրույթի բողոքներ առաջացրեց առաջադեմ հասարակայնության շրջանում: Դա վկայում է այն մասին, որ մասնավոր սեփականատերերի շահերը կարող են գաղափարախոսական և քաղաքական համակեցության մեջ մտնել ամենահետադիմական գաղափարախոսական հոսանքների հետ: Աստիճանաբար ջրի երես են դուրս գալիս «երրորդ ռայխի» նորանոր արյունալի գաղտնիքներ. պարզվում է, որ մարդկության դեմ նացիստների գործած հրեշավոր ոճիրներին մասնակից են եղել անչափ պատկառելի կապիտալիստական ֆիրմաներ ու բանկեր, որոնք ունեցել են գործարար բարեկանոնության «չափանիշի» համբավ: Ինչպես հայտնի է դարձել, Շվեյցարական ազգային բանկը «Ռայխսբանկի» միջնորդությամբ նացիստական Գերմանիայից գնել էր հսկայական քանակությամբ ոսկի (350 տոննա), որի մեծագույն մասը կազմում էր օկուպացված երկրներում թալանված ու համակենտրոնացման ճամբարներում տանջամահ արված կալանավորներին պատկանող ոսկին: Դա ավելի քան տասն անգամ գերազանցում էր Գերմանիայի պատերազմի նախօրյակի ոսկու պաշարը: Շվեյցարական բանկիրներն այդպես ֆաշիստների արյունահեղ ոճրագործությունները վերածում ու ստանում էին բանկային դիվիդենտների «մաքուր ոսկի»:

Հասարակական շահերը, պահանջմունքները, ծառայություններն ու այլ սպասարկումները վարկաբեկելու նպատակով մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի բուրժուական միջոցների ծավալած զանգվածային պրոպագանդիստական կամպանիայի միջուկն է կազմում պահպանողականության գաղափարախոսությունը: Պետք է նկատի ունենալ այն որոշակի տարբերությունը, որ գոյություն ունի և որը արևմտյան գաղափարախոսներն անցկացնում են հասարակական շահ և ընդհանուր շահ հասկացությունների միջև: Դա արտացոլվում է այն պրոպագանդայում, որը ամեն կերպ ռեկլամում է «նախաձեռնությունը հանուն բոլոր դասակարգերի ընդհանուր շահերի» և միաժամանակ ստվեր գցում հասարակական շահի վրա: Ինչումն է բանը: Ամենից առաջ այստեղ արտահայտվում է բուրժուական «համերաշխական» տեսությունների ու հայացքների ավանդույթը: Դրան լիովին համապատասխան, ժամանակակից պայմաններում լայնորեն տարածվում են հակամարտ դասակարգերի շահերի «ներդաշնակության», «միասնության», «ընդհանրության», ամեն տեսակ բուրժուական ու ռեֆորմիստական կոնցեպցիաներ: Ամեն կերպ ռեկլամվում են այն «նախաձեռնությունները», որոնց նպատակն է «հաշտեցնել» դրանց հակամարտությունը, «սոցիալական պարտնյորության» և կոնֆլիկտների հաշտեցման օգնությամբ «շահերի համահարթումը հօգուտ բոլորի»:

Վ. Ի. Լենինը վճռականորեն մերժում էր ռեֆորմիստների ամեն տեսակ նախաձեռնությունները հանուն «քաղաքացիական», «սոցիալական հաշտության» և հսկայական պատմական փորձի ու դասակարգային պայքարի տրամաբանության հիման վրա համոզիչ կերպով ցույց տվեց դասակարգային պայքարի ամեն կարգի «խաղարարների»՝ դասակարգային թշնամիներին դասակարգային գործակիցներ դարձնելու և դասակարգային պատերազմը դասակարգային հաշտության, այսպես կոչված՝ քաղաքացիական հաշտության վերածելու փորձերի կատարյալ սնանկությունը (տե՛ս ԵԼԺ, հ. 45, էջ 444):

«Նախաձեռնության զսպման» բուրժուառեֆորմիստական գաղափարների վտանգը միշտ էլ ակնհայտ է եղել իսկական հեղափոխականների համար, ինչով էլ որ այն քողարկված լինի:

Կ. Մարքսը ոչնչացնող քննադատության է ենթարկել ամերիկյան տնտեսագետների «տնտեսական ներդաշնակությունները» (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 46, ч. II, с. 458—459):

Հեղափոխական ակտիվության լճացմանն է նպատակամղված «սոցիալական պարտնյորության» սխեման, ինչպես նաև բուրժուական հասարակության «քաղաքական ներդաշնակության» ամեն տեսակ դոկտրինաները, երբ սոցիոլոգներն ու քաղաքագետները Արևմուտքում փորձում են բուրժուական պետությունը ներկայացնել որ-



պես ընդհանուր, վերդասակարգային, «ազգային» շահերի ապահովման ու պաշտպանության ինչ-որ մի ձև, որպես սոցիալ-քաղաքական ընդհանրության «դրսևորում», քաղաքական և սոցիալական «իրավարարի» ֆունկցիա, «ինտեգրացնող գործոն», «ամբողջականություն» և այլն: Ռեֆորմիստները դատողություններ են անում «ընդհանուր բարօրության» մասին, համառորեն շարունակում են պնդել, թե «բանվորի համար լավ կարող է լինել միայն այն դեպքում, եթե լավ է ձեռնարկատիրոջ համար»: «Բոլորն էլ մեկ նավակի մեջ են. և՛ նրանք, ովքեր ղեկի մոտ են, և՛ նրանք, ովքեր թիավարում են, միավորված են ընդհանուր շահով»:

Նման արատավոր մեթոդաբանական մոտեցումն անտեսում է աշխատավորների սոցիալական ակտիվության էական գիծը, որը հասարակության՝ հակամարտ դասակարգերի պառակտման արգասիք է: Պրոլետարիատի պայքարը իր շահերի համար հասարակական զարգացման, աշխատավորների նախաձեռնության աղբյուրն է ու շարժիչ ուժը: Իսկ «շահերի ընդհանրության» մասին դատողությունները չեն համապատասխանում իրականությանը, քանի որ բուրժուական հասարակությունը պառակտված է իրենց շահերով հակադիր դասակարգերի: Պատահական չէ, որ «ընդհանրություն» բառով ձեռնածություն անելուց զատ, բուրժուական սոցիոլոգները չեն կարող որոշակի ասել, թե ինչու՞մն է այն կոնկրետ արտահայտվում: «Ընդհանրությունը» երևան է հանում այն առասպելի բոլոր հատկությունները, որը քողարկում է սնանկացած «կոնֆլիկտի հաղթահարման նախաձեռնությունների» էությունն ու նպատակները: Ակտիվանում են ամեն կարգի սպեկուլյացիաները «ընդհանուր շահ» կատեգորիայի շուրջը. այդ տեսակետից բնորոշ է գործարար շրջանների ձայնափողերի հետևյալ դատողությունը. «ԱՄՆ-ում ներկայումս բոլոր սոցիալական խմբերը պետք է հանգեն այն բանի ըմբռնմանը, որ երկիրը կայուն տնտեսական աճի ուղին վերադառնալու ընդհանուր շահը գերազանցում է բոլոր մյուս կոնֆլիկտային շահերը» (Business Week. N. Y., 1982, p. 75—76):

«Ինտեգրացնող գործոնների», «ամբողջականության», «շահերի ընդհանրության» վարագույրի հետևում ցայտուն կերպով զգացվում են մոնոպոլիստական գիշատիչների «մասնավոր նախաձեռնության» ընչաքաղց շահերը: Կապիտալիզմի ջատագովները շեշտը դնում են այն բանի վրա, որ բուրժուաներն ու պրոլետարները ապրում են մեկ հասարակության մեջ, համերաշխ նախաձեռնողական գործողությունների կոչ անելով հանուն հասարակության, թեև ամեն մի նախաձեռնություն այդ ուղղությամբ վնասակար է ու անպտուղ: Կ. Մարքսը գրել է, որ նման տրամաբանությունը հավասարազոր է այն բանին, որ, եթե որևէ մեկը ցանկանար ասել. «հասարակության տեսակետից գոյություն չունեն ո՛չ ստրուկներ, ո՛չ քաղաքացիներ. և՛ առաջինները և՛ երկրորդները մարդիկ են: Իսկ իրականում նրանք մարդիկ են հասարակությունից դուրս: Լինել ստրուկ կամ քաղաքացի՝ դա հասարակական բնորոշումներ են, մարդու հարաբերությունները մարդու նկատմամբ: Վ-ն մարդ է: Իսկ որպես այդպիսին ստրուկ չէ: Նա ստրուկ է հասարակության մեջ և հասարակության միջոցով» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 46, ч. I, с. 214): Կապիտալիստների և բանվորների միջև եղած տարբերությունը ստանում է դասակարգային հակամարտության բնույթ, որը թելադրում է յուրաքանչյուր դասակարգի նախաձեռնության որոշակի բնույթը:

Անողոք ճշմարտությունը կապիտալիստական հարաբերությունների մասին իր համար ուղի է հարթում ստի քողածածկի և զեղծարարությունների բարիկադների միջով: Բանվորները կապիտալիստական երկրներում մեծամասնությամբ քննադատաբար են վերաբերվում բուրժուական պրոպագանդայի առասպելներին և «իրավական պետության» ռեֆորմիստական պատրանքներին:

Վ. Ի. Լենինը **Ի՞նչ անել** աշխատությունում որպես դասակարգային գիտակցության արթնացման կարևոր հատկանիշ նշում էր աշխատանքի մարդկանց շահագործման ու իրավազրկության հասարակության բոլոր հակամարդկային դրսևորումների քաղաքական մերկացումների կիրքը, որ արթնացել է բանվորների շրջանում: Այն մասին, որ կրքոտ ատելությունն ու անհաշտելիությունը կապիտալի աշխարհի նկատմամբ մինչև հիմա էլ ապրում է բանվոր դասակարգի մեջ, վկայում են բազմաթիվ փաստեր: Ահա դրանցից մեկը: Իտալիայում հրապարակվել է մի անողոք ու ճշմարտացի մարդկային փաստաթուղթ՝ Թոմազո դի Չաոլի «Երկնագույն արտահագուստ» գիրքը՝ «Հարավցի բանվորի զայրույթը, հուշերն ու երազանքները» բնորոշ ենթավերնագրով: Դրա ամեն մի էջը շնչում է իր կեղեքիչների նկատմամբ հասարակ բանվորի դասակարգային անհաշտելիության ոգով, մերկացնում է «բարօրու-

թյան հասարակության» «սոցիալական պարտնյորության» և դասակարգային կոմպրոմիսների առասպելները: Ահա բանվորի սեփական խոսքերը իր դրության մասին. «Բանվորների գործերը գնալով ավելի ու ավելի են վատանում: Գործարաններում մեզ շահագործում են, թունավորում, սպանում և, կարծես թե դա քիչ էր, դուրս են անում, փողոց նետում երբ և ինչպես ցանկանան: Մեզանից շարունակ պահանջում են զոհաբերություններ, թեև մենք առանց այդ էլ շարունակ ինչ-որ բան զոհում ենք... Ամեն տեսակ գործարքներ խղճի հետ, խոստումներ, «համատեղելիություն», այդ ամենը միայն դատարկ շաղակրատություն է: Այդ պատմական կոմպրոմիսը ինչ-որ ինձ չի համոզում: Մի՞թե մենք, աշխատավորներս, կարող ենք համաձայնության գալ նրանց հետ, ովքեր միշտ մեզ փոսն են հրում և միշտ աշխատելու են ճնշել մեզ... Մեր հասարակությունը նեխում է օրեցօր... Իսկ մինչդեռ ամբողջ սիստեմը քայքայվում է, աճում է լարվածությունը, բռնությունը»:

Գաղափարների պայքարի արդի պայմաններում միանգամայն հրատապ է դառնում սոցիալական պատրանքների օբյեկտիվ և սուբյեկտիվ արմատների քննարկումը՝ որպես մտքի հեռացում իրականությունից, աղճատված, շահագործողական հասարակական հարաբերությունների արգասիք, որպես օտարման և նրա իսկ գործիքի՝ քաղաքական ձեռնածության սիստեմում, սոցիալական ակտիվությունն արգելակելու նպատակով տիրապետող դասակարգի պրոպագանդիստական կոմպլեքսում կարևոր սոցիալական ֆունկցիա կատարող որոշակի գաղափարախոսական երևույթի ծնունդ: Սոցիալական պատրանքները, աղճատելով շահերի էությունը, բավականին վտանգավոր են, մեծ վնաս են պատճառում, մոլորությունը հաճախ ողբերգություն է դառնում անհատի, դասակարգի, սոցիալական խմբի համար, իսկ երբեմն նաև սոցիալական միստիֆիկատորների և արկածախնդիրների զոհը դարձած ամբողջ ժողովրդի համար, օրինակ, դեմագոգիկ դատողությունները ֆաշիստների, խաղաղության ու լիցքաթափման հակառակորդների «ազգային շահերի» մասին և այլն: Կեղծ գիտակցության ֆենոմենները կապիտալիստական երկրներում արգելակում են իսկական շահերի ըմբռնման, դասակարգային ինքնագիտակցության և աշխատավորների ակտիվության աճի պրոցեսը: Պատրանքների տարերային առաջացման հիմքում ընկած է աշխատանքի օտարումը, ապրանքային հարաբերությունների սպեցիֆիկայի ներգործությունը կապիտալիզմի ժամանակ, զգացվում է գիտատեխնիկական առաջադիմության ազդեցությունը նրա բազմապիսի դրսևորումներում և հետևանքներում, օրինակ, շահագործման ավելի թաքնված բնույթը, լայնամասշտաբ սպառողական վարկը, կառավարմանը մասնակցելու արտաքին տեսքը և այլն (տե՛ս О. А. Феофанов. Природа социальных иллюзий и механизм их формирования в буржуазном обществе. М., 1982): Ամերիկյան կապիտալիզմի զարգացման առանձնահատկություններն իրենց կնիքն են թողել «ամերիկյան երազի», «ամերիկյան բացառիկության», «ամերիկյան դարի», «համաշխարհային լիդերության», զանազան դասակարգերի «շահերի ընդհանրության», նյութական շահերի զանազան օգտապաշտական վուլգար-սպառողական սպեկուլյացիաների պատրանքների վրա՝ հաշվի առնելով դրանց կարևորությունը նախաձեռնության խթանման գործում:

Իր դարն ապրող դասակարգի «կեղծ գիտակցության» զանազան ձևերին համապատասխանում են նաև ծայրահեղ միստիֆիկացված «կեղծ շահերը», որ իմպերիալիստական պրոպագանդան մատուցում է «ազգային անվտանգության շահերի» անվան տակ, որոնց հետևում իրականում թաքնված է ագրեսիայի նախապատրաստում, միջազգային լարվածության բորբոքում և սպառազինությունների մրցավազքի նոր փուլի արագացում: Դրանք հենց «կեղծ շահերն» են, քանի որ ոչ մի դասակարգի օբյեկտիվ շահը երբեք չի կարող լինել ջերմամիջուկային աղետի նախապատրաստումն ու իրականացումը:

Եսասիրական շահերի կուրության նման կարգի կործանարար հետևանքների օրինակ են, ի դեպ, ռազմաարդյունաբերական կոմպլեքսի ստրատեգների պլանները, որոնք, շահույթի հետևից ընկած, ծավալում են սպառազինությունների մրցավազքի նորանոր ոլորտներ (ստրատեգիական պաշտպանական նախաձեռնություն՝ «աստղային պատերազմներ») և այլն, որոնց վտանգավոր հետևանքները հետզհետե ավելի ակնհայտ են դառնում:

Բուրժուական տեսաբանները քննադատում են հասարակական շահեր և պահանջմունքներ հասկացությունը, առաջարկելով այդ անվան տակ հասկանալ առանձին անձանց հայտնի կարիքները, քանի որ «հասարակությունը՝ որպես այդպիսին ոչինչ չի սպառում»: Նրանց կարծիքով, նախաձեռնությունը խթանում է միայն մասնավոր շահը: Առանձին պրոբլեմներ, օրինակ, շրջակա միջավայրի պահպանությունը, կրթությունը, առողջապահությունը միայն երբեմն են դառնում օրինական պետական խնդիր և նախաձեռնության օբյեկտ, եթե մարդը դրանք ընկալում է որպես իր «սեփական» շահ: Հասարակական շահերի ու պահանջմունքների այդ կոպիտ անհատապաշտական ու ըստ էության նիհիլիստական մեկնաբանումը, դրանց ժխտումը համապատասխանում են կապիտալիզմի ոգուն: Սոցիալիզմի պայմաններում որպես ստեղծագործական նախաձեռնության գլխավոր սոցիալական երաշխիք հանդես է գալիս հասարակությունն ամբողջությամբ՝ պետության և հասարակական մյուս հաստատությունների ձևով:

Բուրժուական սոցիոլոգներն ու քաղաքագետները ժխտում են հասարակական նախաձեռնության բուն հասկացությունը, այսինքն՝ անհատի գործողությունները հանուն հասարակական շահերի: Այս տեսանկյունից բնորոշ են հարձակումները «հասարակական բարօրություն» հասկացության դեմ, որը մի քանի տարի սրանից առաջ Արևմուտքում հռչակվում էր որպես փիլիսոփայության, քաղաքականագիտության, սոցիոլոգիայի, իրավագիտության և հասարակական գիտությունների մյուս ճյուղերի հանգուցային կատեգորիա: Տվյալ հասկացության բացասական մեկնաբանման նկատմամբ նման շրջադարձի պատճառների մասին որոշ պատկերացում է տալիս ձեռնարկվող գրոհների ու հարձակումների գաղափարախոսական ուղղվածությունը:

ԱՄՆ-ի համալսարաններից մեկի փիլիսոփայության պրոֆեսոր Ալեք Բեքանանը **Մարքսը և արդարությունը** գրքում գրում է. «Անկախ այն բանից, թե ես իմ ավանդը կներդնեմ թե ոչ, ուրիշները կներդնեն իրենց ավանդը, որն ընդհանուր բարօրությանը կնպաստի կամ ոչ: Եթե բարօրությունը ձեռք բերվի, ապա այն ինձ համար մատչելի կլինի առանց ջանքերի էլ, և իմ ավանդը ավելորդ է: Եթե ոչ, այդ դեպքում իմ ավանդը դարձյալ զուր կլինի: Այսպիսով, ռացիոնալ կերպով ըմբռնված սեփական շահը պահանջում է ավանդ չներդնել ուրիշների ջանքերի մեջ, այլ լինել «ազատ հրաձիգ» (Buchanan A. Marx and Justice N. Y., 1982, p. 82):

Նման դատողությունների տրամաբանությունը ելնում է այն կանխակալ դրույթից, որ տխրահռչակ «ազատ հրաձիգը», որն ընդունակ է տեսնել միայն մեկ նպատակ՝ սեփական, եսասիրական շահը, բոլոր ժամանակների համար ներկայացնում է անհատի ու սոցիալական վարքագծի միակ հնարավոր տիպը: Բուրժուական գաղափարախոսները պնդում են, որ միայն մասնավոր շահն է երաշխիք ստեղծում սուբյեկտի ակտիվության ու նախաձեռնության համար: Հասարակական շահը, իբր, վերացնում է այդ հնարավորությունը, անհատին դատապարտում անգործության: Այդպիսով բացառվում է նախաձեռնությունը հանուն ընդհանուր բարօրության:

Բուրժուական գաղափարախոսության ճգնաժամը հաճախ դրսևորվում է մշակվող և պրոպագանդվող կոնցեպցիաների ու դոկտրինաների յուրատեսակ զույգության ձևով, որոնք փոխադարձաբար լրացնում են մեկը մյուսին, օրինակ, մի կողմից՝ «շահերի ընդհանրության» պրոպագանդան, մյուս կողմից՝ հասարակական շահերի գոյության ժխտումը: Այդ փոխադարձ լրացումը տալիս է որոշակի փոխհատուցող արդյունք, որն արտահայտվում է զույգ կոնցեպցիաներից մեկի պրոպագանդայի ակտիվացմամբ, այն դեպքում, երբ դրա հետ կապված դոկտրինայի ազդեցությունը թուլանում է: «Հասարակական շահերի» վրա կատարվող հարձակումներում երևում է մի գլխավոր նպատակ՝ հասարակական հիմունքների, որպես սկզբունքի, վարկաբեկումն ու անվանարկումը (արտադրության միջոցների հասարակական սեփականությունը, հասարակական արտադրությունը, սոցիալիստական պլանավորումն ու ինքնակառավարումը և այլն): Հասարակական շահերի դեմ կատարվող քննադատական հարձակումներն ամենից ավելի հաճախ դասակարգային մոլուցքի բնույթ են կրում, երբ իր կատաղի հարձակումներում բուրժուան մոռանում է, որ դրանից մի րոպե առաջ հռչակում էր «քաղաքացիական հաշտություն», «ընդհանուր շահ», ճիշտ է, ինչպես միշտ, ամենից առաջ ելնելով իր եսասիրական նպատակներից ու շահերից:

Այդ կապակցությամբ ուշագրավ են «պահպանողական հեղափոխության» գաղափարախոսների հարձակումները «հասարակական շահերի» ու դրանց հետ կապված պետության, հասարակական կազմակերպությունների պրակտիկ գործունեության վրա: Նոր աջերը Ֆրանսիայում ժխտում են «հասարակական շահերի» բուն գոյությունը: Պրագմատիզմի տեսաբան Վ. Ջեմսը «փաստարկում էր» հավասարության շահավետությունը՝ որպես մրցապայքարից շահով դուրս գալու կարևոր հնարավորու-

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

**ՌԻ. ԱԹՅԱՆ**

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ՎԿԱՅՈՒՄ Է, որ տարբեր ժողովուրդների հոգևոր հաղորդակցումն ու մերձեցումը, արգասավոր համագործակցությունը մեծապես նպաստել են նրանց սոցիալական ու ազգային առաջադիմությանը: Այդ օրինաչափությունը որակապես նոր ուժով դրսևորվեց սոցիալիստական ընկերակցության երկրների արդեն ավանդական դարձած մշակութային հարաբերություններում:

Այսօր, երբ սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ձեռնամուխ է եղել վերակառուցման ու արագացման լայնամասշտաբ խնդիրների իրականացմանը, առավելապես կարևորվում են սոցիալիստական երկրների ժողովուրդների հոգևոր արժեքների փոխանակումը և հաղորդակցումը: Եղբայրական երկրների մշակութային կապերի ընդլայնումն ու խորացումը հասարակական հարաբերությունների ներկա փուլում էապես նպաստում են սոցիալիստական հասարակական գիտակցության զարգացմանը, աշխատավորների կուլտուր-կրթական մակարդակի բարձրացմանը, նրանց ինտերնացիոնալիստական ու հայրենասիրական զգացմունքների ամրապնդմանը, սոցիալական ակտիվության աճին: Այդ մասին վերստին նշվեց ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ. «Կոլեկտիվ մտքի ակտիվացումը, հոգևոր արժեքների փոխանակման, գիտության ու կուլտուրայի բնագավառի համագործակցության մշտական ընդլայնումը ծառայում են սոցիալիստական երկրների բարեկամության հետագա խորացմանը» **(ՍՄԿԿ ծրագիրը**, էջ 86):

Սոցիալիստական մշակութային համագործակցությունը էապես ազդում է հոգևոր արժեքների ստեղծման, տեղաբաշխման, փոխանակման և օգտագործման ողջ համակարգի վրա: Այն միաժամանակ նպաստում է մշակութային արժեքների հետ աշխատավորական մասսաների ավելի խոր ու բազմակողմանի հաղորդակցմանը, ապահովում նրանց ակտիվ մասնակցությունը հոգևոր ստեղծագործության պրոցեսին: Հասարակական առնչությունների համակարգում առաջնակարգ նշանակություն է ստանում սոցիալիստական երկրների կուլտուրաների փոխազդեցությունը: Վերջինս նպաստում է ոչ միայն մարդկանց գիտակրթական և կուլտուրական մակարդակների բարձրացմանը, այլև զգալի դեր է խաղում եղբայրացած ժողովուրդների հոգևոր կյանքի հարստացման գործում: Այստեղ հսկայական նշանակություն ունի նաև սովետական մշակույթի ձևավորման ու զարգացման, ՍՍՀՄ ժողովուրդների կողմից հոգևոր արժեքների ստեղծման ու փոխանակման գործում եղած փորձի ընդհանրացումը՝ սոցիալիստական ընկերակցության երկրների մասշտաբով: Կուլտուրական շինարարության և ազգային մշակույթների համագործակցության սովետական փորձը լայն հնարավորություններ ստեղծեց նաև եղբայրական երկրների ազգային մշակույթների բազմակողմանի ծաղկման ու զարգացման համար: Այդ է վկայում այն փաստը,



որ պատմական բավականին կարճ ժամանակահատվածում (երկրորդ համաշխարհային պատերազմից հետո մինչև մեր օրերը) արագորեն զարգացավ սոցիալիստական երկրների ազգային հոգևոր մշակույթը: Այսպես, օրինակ, 1985 թվականին ԲԺՀ-ում հաշվվում էին 5,7 հազար մասսայական գրադարան, 53 **մլն** օրինակ գրքային ֆոնդով, 63 թատրոն, 3,3 հազար կինոսարքավորում և այլն: Երկրում թերթերի տարեկան տպաքանակն անցնում է մեկ **մլրդ** օրինակից, գրքերինն ու բրոշյուրներինը՝ 60 **մլն**-ից: Նույն թվականի տվյալներով, Հունգարիայում հաշվվում էր 9,6 հազար մասսայական գրադարան՝ 48 **մլն** օրինակ գրքային ֆոնդով, գործում են 40 թատրոն և 3,8 հազար կինոսարքավորում: Երկրում տարեկան հրատարակվում է 121 անուն թերթ՝ մոտ մեկ միլիոն օրինակ տպաքանակով: Իսկ Ռումինիայում հրատարակվող գրքերի ու բրոշյուրների տպաքանակը հասնում է 66 **մլն** օրինակի (Мир социализма в цифрах и фактах, 1985 г., М., 1986, стр. 126—127): Եվ որքան ուժեղ է ազգերի միջև ներքին կապը, որքան զարգացած են եղբայրական երկրների արտադրողական ուժերն ու հոգևոր մշակույթը, այնքան լայն հնարավորություններ կան նրանց միջազգային համագործակցության զարգացման ու ընդլայնման համար:

Ներկա պայմաններում «... լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը, ժողովուրդների բարեկամության համակողմանի ամրապնդումը սոցիալիզմի կատարելագործման բաղկացուցիչ մասն են (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 61): Սոցիալիզմի նվաճումների պաշտպանության, նրա՝ որպես հասարակական երևույթի և համաշխարհային սիստեմի, զարգացման գործում Վ. Ի. Լենինը խիստ կարևոր տեղ է հատկացրել ժողովուրդների բազմակողմանի համագործակցության ամրապնդմանն ու խորացմանը: Ազատագրված ժողովուրդներին և հաղթանակած պրոլետարիատին, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «պարտադրաբար հարկավոր է ռազմական և տնտեսական սերտ դաշինք» **(ԵԼԺ**, հ. 40, էջ 55): Այս միտքը հավասարապես վերաբերում է նաև հոգևոր կյանքին: Այսօր արդեն վստահորեն կարելի է ասել, որ սոցիալիստական ազգերի մշակույթների փոխադարձ կապերի հարանուն զարգացումը դրանց ծաղկման ու բարգավաճման առավել հեռանկարային ուղին է:

Սոցիալիզմը, վերածվելով համաշխարհային սիստեմի, ի հայտ բերեց նոր իրողություններ. նրա կազմի մեջ մտնող եղբայրական երկրների միջև ձևավորվեցին միանգամայն նոր տիպի միջազգային հարաբերություններ՝ հիմնված սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա: Խոսելով սոցիալիստական ինտերնացիոնալիզմի բնույթի ու բովանդակության մասին՝ պետք է նշել, որ այն պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրսևորման յուրահատուկ ձև է, թեև նրանից տարբերվում է իր օբյեկտիվ հիմքով: Դա բացատրվում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գործունեության ոլորտի որակածավալային մասշտաբով: Այն ընդգրկում է սոցիալիստական աշխարհը՝ իրեն բնորոշ սկզբունքորեն նոր հասարակական, ազգամիջյան և միջազգային հարաբերություններով: Խոսքը կոնկրետ վերաբերում է սոցիալիստական երկրների քաղաքական կառուցվածքին, նրանց սոցիալ-տնտեսական կարգի ընդհանրությանը, գաղափարախոսության և վերջնական նպատակների միասնությանը, հասարակության հետագա զարգացման պրոցեսում լուծվող հիմնական խնդիրների ու շահերի ամբողջականությանը և այլն:

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը մի կողմից հանդես է գալիս աշխարհընկալման որոշակի ձևով (սոցիալիստական երկրների միջազգային փոխհարաբերություններ, վերաբերմունքը ազգային-ազատագրական շարժումների նկատմամբ, ազգայինի և համազգայինի փոխհարաբերության դիալեկտիկան և այլն), մյուս կողմից՝ իրենից ներկայացնում է գործունեության պրակտիկ սկզբունքների կուռ համակարգ: Վերջինիս պրակտիկ դրսևորման մեջ հատկապես կարևոր դեր է խաղում եղբայրական փոխօգնության ու համերաշխության սկզբունքը: Այդ սկզբունքի օբյեկտիվ հիմքը միջազգային կոմունիստական շարժման բոլոր ջոկատների և սոցիալիստական պետությունների դասակարգային շահերի համապատասխանության փաստն է: Դրա պրակտիկ կիրառումը, որպես փոխհարաբերությունների կարգավորման իրավական նորմ, բնորոշ է բոլոր այդ երկրներին:

Նոր տիպի փոխհարաբերություններում, որ ձևավորվել են սոցիալիստական ընկերակցության երկրների միջև, եղբայրական համագործակցության սկզբունքը դարձել է նրանց կողմից ազգային և ինտերնացիոնալ բնույթի գործոնների զուգակցման օբյեկտիվ պահանջի իրականացման անհրաժեշտություն: Այդ իմաստով էլ այն նա-

խատեսում է ինչպես սոցիալիստական շինարարության փորձի ինտերնացիոնալացում, այնպես էլ միջազգային ասպարեզում համաձայնեցված արտաքին քաղաքականության իրականացում: Եղբայրական համագործակցության սկզբունքն իր գործնական կիրառումն է գտել սոցիալիստական երկրների միջև կնքված բոլոր տեսակի երկկողմ և բազմակողմ պայմանագրերում: Միջազգային փոխհարաբերություններում որպես նոր՝ միայն սոցիալիզմի համաշխարհային սիստեմին բնորոշ, սկզբունք հանդես է գալիս անշահախնդիր օգնության և փոխադարձ օժանդակության սկզբունքը: Այն օբյեկտիվ նախադրյալներ է ստեղծում եղբայրական երկրների տնտեսական ու հոգևոր պոտենցիալների զարգացման համար:

Սոցիալիստական հասարակարգի առաջընթացի հետ միասին ավելի է խորանում ու ընդարձակվում եղբայրական երկրների համագործակցությունը, որն ընդգրկում է հասարակական կյանքի բոլոր բնագավառները: Հանդիսանալով միջազգային նոր տիպի փոխհարաբերությունների կարևոր կողմերից մեկը՝ մշակութային համագործակցությունը ծառայում է սոցիալիստական ազգային մշակույթների ծաղկման ու փոխհարստացման գործին, նպաստում միջազգային մասշտաբով հասարակական առաջընթացի տեմպերի արագացմանը: Հասարակության հոգևոր կյանքի ոլորտում այդ համագործակցությունը մշակույթի արժեքների պարզ փոխանակման ձևերից վերաճում է պլանայնորեն կարգավորվող և բազմակողմանիորեն զարգացող պրոցեսի: Վերջինիս գլխավոր օղակը դառնում է հոգևոր արժեքների արտադրությունը:

Սոցիալիզմի երկրներում մշակութային կապերի ամրապնդումն ու զարգացումը կուսակցական, պետական կարևոր գործ են և իրականացվում են ժողովրդական ամենալայն զանգվածների օգնությամբ: Գնալով ավելի է ծավալվում եղբայրական երկրների մշակութային համագործակցության սոցիալական բազան, որը բացատրվում է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ընդլայնման և աշխատավորական մասսաների ստեղծագործական ակտիվության անընդհատ աճով: Այս կապակցությամբ Մ. Ս. Գորբաչովը ԼԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար, ԼԺՀ պետական խորհրդի նախագահ Վ. Յարուզելսկու հետ ընթացիկ տարվա ապրիլին տեղի ունեցած հանդիպման ժամանակ նշեց, որ ժամանակը հրամայաբար պահանջում է «կուլտուրական կապերի մեջ ընդգրկել բնակչության ամենալայն խավերին, վերացնել մասսայական կոնտակտներին խանգարող արգելքները, այլ կերպ ասած՝ դեմոկրատացնել այդ բնագավառը»:

Մշակութային համագործակցությունն ավելի ընդլայնելու նպատակով 1958 թվականին ՍՍՀՄ-ում ստեղծվեց Բարեկամության սովետական ընկերությունների միությունը: Ավելի ուշ, այս ընկերության օրինակով, եղբայրական մյուս երկրներում նույնպես ստեղծվեցին բարեկամության ու մշակութային կապերի ընկերություններ: Դրանք, իրենց կազմում ընդգրկելով բազմամիլիոն անդամներ, դարձել են ոչ միայն մշակութային համագործակցության կազմակերպման, այլև աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը նպաստող հաստատություններ: Այդ ընկերությունների ակտիվ գործունեության շնորհիվ սոցիալիստական երկրների միջև հոգևոր արժեքների փոխանակման պրոցեսը ձեռք է բերել ավելի ինտենսիվ բնույթ, կատարելագործվել ու ընդլայնվել են մշակութային համագործակցության ձևերն ու մեթոդները: Ներկայումս Բարեկամության սովետական ընկերությունների միությունը միայն մեր երկրում ունի ավելի քան 800 բաժանմունք: Ինչպես հասարակական կյանքի մյուս ասպարեզներում, այնպես էլ մշակույթի բնագավառում իրականացվող համագործակցության ընթացքում սոցիալիստական երկրները վարում են պետականորեն համաձայնեցված քաղաքականություն: Նրանց միջև կնքվել են միջպետական մշակութային փոխադարձ կապերը կարգավորող կոմպլեքսային բնույթի ավելի քան 80 և նրա կոնկրետ առանձին բնագավառներին վերաբերող 200-ից ավելի պայմանագրեր:

Սոցիալիստական ընկերակցության երկրների մշակութային համագործակցության ձևերն անընդհատ կատարելագործվում ու խորանում են, ավելի հաճախակի են դառնում տասնօրյակների, միամսյակների, փառատոների կազմակերպումը, գեղարվեստական գրականության փոխադարձ թարգմանությունները, կինոնկարների ու թատերական ներկայացումների ցուցադրումները և այլն:

ԳԴՀ-ի հասարակայնության առջև բազմիցս հաջողությամբ հանդես են եկել սովետական պետական ու ինքնագործ անսամբլներ: Այնտեղ լավ ծանոթ են Մոսկվայի Ն. Բաումանի անվան բարձրագույն տեխնիկական ուսումնարանի «Գաուդեա-



մուս» վոկալ-գործիքային անսամբլին, մեր նշանավոր երաժշտական կոլեկտիվներին ու մենակատարներին: ՍՍՀՄ-ում միշտ էլ մեծ խանդավառությամբ են ընդունվել ԳԴՀ-ի «Լինդեն օպեր» օպերային թատրոնի հյուրախաղերը: Վերջին երկու տարում բավականին ընդարձակվել է սովետական արտիստների հյուրախաղերի ցանկը: Լեհ հանդիսատեսի ցանկալի հյուրերն են սովետական պրոֆեսիոնալ ու ինքնագործ գեղարվեստական կոլեկտիվները: Չեխոսլովակյան թատերաբեմերում և համերգասրահներում մեր երաժշտական խմբերը բազմիցս հանդես են եկել հարուստ ու ինքնատիպ ծրագրերով՝ գեղագիտական հաճույք պատճառելով հանդիսատեսին: Արդեն պրակտիկա է դարձել եղբայրական երկրների մշակույթի գործիչների միացյալ ուժերով գեղարվեստական ներկայացումներ բեմադրելը: Այսպես, օրինակ, Բուխարեստում 1984 թ. թատերաշրջանը բացվեց ՍՍՀՄ Մեծ թատրոնի դերասանների հյուրախաղերով: Այդ ընթացքում մեր նշանավոր մենակատարներ Նադեժդա Պավլովան և Վյաչեսլավ Գորդեևը ռումինական օպերային թատրոնի ներկայացրած «Ժիզել» և «Կարապի լիճը» բալետներում խաղացին գլխավոր դերերը:

Սոցիալիստական ընկերակցության երկրների զարգացող մշակութային կապերում ի հայտ են գալիս նոր ձևեր ու մեթոդներ, որոնք նպաստում են առաջադիմական մշակույթի ինտերնացիոնալացմանը, մերձեցմանն ու փոխհարստացմանը: Այս իմաստով հատկանշական էր 1986 թ. հոկտեմբերին Վարշավայում տեղի ունեցած սոցիալիստական երկրների կուլտուրայի մինիստրների հերթական խորհրդակցությունը: Այնտեղ քննարկվեցին մշակույթի և մշակութային համագործակցության զարգացման հետ կապված հրատապ շատ հարցեր՝ ՍՄԿԿ և եղբայրական մյուս կուսակցությունների համագումարների առաջադրած պահանջներին համապատասխան: Խորհրդակցությունը հանգամանորեն անդրադարձավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակի տոնակատարություններին եղբայրական երկրների մշակութային գործիչների ակտիվ մասնակցության ապահովման հարցերին:

Խոշոր, կոմպլեքսային միջոցառումները հնարավորություն են ստեղծում լայնորեն ցուցադրել տվյալ ժողովրդի հոգևոր զարգացման աստիճանը և ավելի մեծաթիվ աշխատավորական մասսաների մասնակից դարձնել դրանց: 1985 թ. մեր երկրում ՉՍՍՀ-ի, այնուհետև Պրագայում՝ Մոսկվայի, ինչպես նաև 1986 թ. ՍՍՀՄ-ում անցկացված ԲԺՀ-ի մշակույթի օրերի ընթացքում հանդես եկան բազմաթիվ գեղարվեստական կոլեկտիվներ ու մենակատարներ, կազմակերպվեցին գրքի, մշակույթի տարբեր ասպարեզները ներկայացնող ցուցահանդեսներ, ցուցադրվեցին կինոնկարներ և այլն: Մշակույթի փոխադարձ օրերը, որպես եղբայրացած երկրների լայն ու բազմակողմանի կապերի մի մաս, լավ ու կայուն ավանդույթ են դարձել: Դրանք արտահայտում են մեր կուսակցությունների ինտերնացիոնալ և սոցիալական ամբողջական քաղաքականությունը, լիովին համապատասխանում են հասարակական կյանքի բոլոր ոլորտներում դրականապես նոր անի հասնելու մասին ՍՄԿԿ-ի և մյուս եղբայրական կոմկուսների մշակած որոշումների ոգուն:

Սոցիալիստական ընկերակցության երկրների մշակութային համագործակցության անընդհատ խորացող ու ընդլայնվող պրոցեսում, ՍՍՀՄ մյուս հանրապետությունների հետ միասին, իր լուրջ ավանդն է ներդնում նաև Սովետական Հայաստանը: Մեր հանրապետությունն այսօր ոչ միայն մեծ հաջողությամբ եղբայրական երկրների ժողովուրդներին է ներկայացնում իր բազմադարյան արվեստն ու գրականությունը, այլև մոտիկից ծանոթանում է նրանց հոգևոր կյանքին: Սոցիալիստական երկրների հետ Հայաստանի ունեցած բազմակողմանի կապերի ամրապնդումը օբյեկտիվ պայմաններ է ստեղծում ազգային մշակույթների ծաղկման, մերձեցման ու փոխհարստացման համար: Համագործակցության հիշատակված ձևերի ու մեթոդների շնորհիվ հոգևոր մշակույթի բնագավառում տեղի է ունենում ազգայինի և ինտերնացիոնալ շահերի սերտ զուգակցում: Հոգևոր կյանքի ինտերնացիոնալացման ընթացքը հանրապետությունում խոր արմատներ է գցել: Մեզանում նկատելի երևույթ են դարձել մշակույթի օրերը, բազմաբնույթ գեղարվեստական ցուցահանդեսների կազմակերպումը, գրքերի փոխադարձ թարգմանությունները և այլն: Հայաստանի արվեստին ու գրականությանը 1985 թ. ծանոթացան ԳԴՀ-ի աշխատավորները: Մեր հանրապետության տարբեր քաղաքներում գեղարվեստական բազմաթիվ միջոցառումներ կազմակերպվեցին, որոնք լայնորեն մեկնաբանեցին ԳԴՀ-ի ինֆորմացիայի օրգանները:

1986 թ. ՍՍՀՄ-ում կազմակերպված ԲԺՀ-ի մշակույթի օրերի ընթացքում Բուլղարիայի առանձին գեղարվեստական կոլեկտիվներ և մենակատարներ մեր հանրա-

պետությունում նույնպես ելույթներ ունեցան: Այդ օրերին Երևանում, Լենինականում, Կիրովականում ու Ղափանում տրված համերգների ժամանակ բուլղար արտիստների կատարմամբ հնչեցին Ա. Ռայչևի, Բ. Ստոյանովի, Ս. Պիրոնկովի և այլ կոմպոզիտորների ստեղծագործություններ: Բուլղարացի կատարողները ծանոթացան Սովետական Հայաստանի հասարակական ու մշակութային կյանքին: Մեր հանրապետության և եղբայրական մյուս երկրների միջև լայն ու բազմակողմանի կապեր են հաստատվել նաև ժողովրդական կրթության բնագավառում: Հայաստանի բուհերում սովորել և այժմ էլ հաջողությամբ սովորում են բազմաթիվ ուսանողներ ու ասպիրանտներ Բուլղարիայից, Վիետնամից, Չեխոսլովակիայից, ԳԴՀ-ից և այլ երկրներից: Հանրապետության առանձին ուսանողական խմբեր տարբեր ժամկետներով ուսումնական պրակտիկայի են մեկնում եղբայրական երկրներ: Միայն 1980 թ. Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտից փորձի փոխանակման նպատակով Գդանսկի պոլիտեխնիկական ինստիտուտ են մեկնել ուսանողական երկու խմբեր: 1982 թ. Երպի-ն ուսումնական պրակտիկա անցկացնելու նպատակով ընդունել է Ֆրայբերգի (ԳԴՀ) լեռնային ակադեմիայի ուսանողների մեկ խումբ, իսկ նույն թվականի օգոստոսին այդ ակադեմիա է ուղարկվել մեր պոլիտեխնիկականի մեխանիկական ֆակուլտետի ուսանողական երկու խումբ: Սովետական Հայաստանի բուհերը եղբայրական երկրների բարձրագույն դպրոցների հետ սիստեմատիկաբար անց են կացնում ուսումնական ծրագրերի, փորձի և գիտական գրականության փոխանակումներ:

Կուլտուրական համագործակցության գործում կարևոր դեր է խաղում հոգևոր մշակույթի տարբեր բնագավառներից վերաբերող ցուցահանդեսների կազմակերպումը: 1986 թ. մեր հանրապետությունում կազմակերպված բուլղարական և հունգարական գրքի տասնօրյակների ընթացքում ցուցադրվեց Հունգարական Ժողովրդական Հանրապետության սոցիալ-տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքին վերաբերող ավելի քան 100 անուն գիրք: Հունգարացի դասական գրողների գործերից ներկայացվեցին Շանդոր Պետեֆիի, Յանոշ Արանի, Կալման Միկսատի, Լասլո Նեմետի, Լայոշ Մեշտերհազի և ուրիշների ստեղծագործությունները:

Երևանի «Հովհաննես Շիրազ» գրատանը ԲԺՀ-ի ավելի քան 13 հրատարակչություններ հայ ընթերցողին էին ներկայացրել հանրապետությունում վերջին տարիներին լույս տեսած հասարակական-քաղաքական, գեղարվեստական, գիտամասսայական, մանկապատանեկան գրքեր ու արվեստի լավագույն գործերի ալբոմներ: Այս և նմանատիպ մյուս ցուցահանդեսները կարևոր ներդրում են եղբայր ժողովուրդների բարեկամական կապերի ամրապնդման գործում, ծառայում են մեր ժամանակաշրջանի ներաշխարհի հարստացմանը, նրա բարոյաքաղաքական և ինտերնացիոնալ դաստիարակությանը: Այս գործում բավականին լուրջ դեր են կատարում նաև գեղարվեստական գրականության փոխադարձ թարգմանությունները: Բուլղարերեն, չեխերեն, լեհերեն թարգմանվել են գրեթե բոլոր հայ դասականների գործերը: 1986 թ. չեխոսլովակյան «Օդեոն» հրատարակչությունը լույս ընծայեց Ե. Չարենցի «Երկիր Նաիրի» վեպը, իսկ առաջիկա երեք-չորս տարում նախատեսվում է հրատարակել Խորենացու «Հայոց պատմությունը», «Սասունցի Դավիթ» էպոսը, Նարեկացու «Մատյանը», Աբովյանի «Վերք Հայաստանին» և այլն: Հունգարիայի կուլտուրայի մինիստրության և ՍՍՀՄ գրողների միության «Սովիետ իռոդալոմ» («Սովետական գրականություն») ամսագրի 1986 թ. սեպտեմբերյան համարը **Հայկական անթոլոգիա. հերոսական էպոսից մինչև մեր օրերի գրականությունը** խորագրի տակ հունգար ընթերցողին է ներկայացրել Հ. Թումանյանի, Դ. Դեմիրճյանի, Հ. Շիրազի, հայ բազմաթիվ այլ գրողների ստեղծագործություններ, ինչպես նաև «Սասունցի Դավիթ» էպոսից հատված, աշխատանքային երգեր, ժողովրդական հեքիաթներ և այլն: Բազմիցս լեհերեն են թարգմանվել Հ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի բանաստեղծությունները, Ստ. Զորյանի «Մի կյանքի պատմություն», Ալ. Շիրվանզադեի «Չար ոգի» վեպերը, ռումիներեն՝ Ե. Չարենցի, Հ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի երկերը, Գ. Սևունցի «Թեհրան» վեպը և այլն: Հայ ընթերցողին լավ ծանոթ են Բրեխտի, Բեխերի, Զեգերսի, Բրեդելի (ԳԴՀ), Իվաշկևիչի, Դոմբրովսկու, Կրուչկովսկու, Տուվիմի, Լեմի (Լեհաստան), Պետեֆիի, Իլլեշայի, Նեմետի, Գիդաշի (Հունգարիա), Սադովյանուի (Ռումինիա), Վապցարովի (Բուլղարիա) և շատ այլ գրողների գործեր:

Մշակութային կյանքի խոշորամասշտաբ միջոցառում են օպերայի և բալետի արտիստների Պ. Ի. Չայկովսկու անվան միջազգային մրցույթները ՍՍՀՄ-ում, «Պրագայի գարունը», «Սոֆիայի երաժշտական շաբաթը», «Վարշավայի աշունը», «Սոպոտի» ամենամյա մրցույթը, Մոսկվայի, Կարլովի Վարիի, Տաշքենդի, Կրակովի, Լայպցիգի կինոփառատոները, որոնց ՍՍՀՄ-ի և եղբայրական մյուս երկրների ներկայացուցիչների հետ միասին հաջողությամբ մասնակցում են նաև Սովետական Հայաստանի գեղարվեստական կոլեկտիվներն ու մենակատարները: Եղբայրական երկրների աշխատավորության առջև բազմիցս հանդես են եկել Հայաստանի այնպիսի ճանաչված կոլեկտիվներ, ինչպիսիք են հանրապետության պարի պետական անսամբլը, պետական երգչախմբերը, հեռուստատեսության և ռադիոյի ժողգործիքների անսամբլը, Կոմիտասի անվան քառյակը, բազմաթիվ ինքնագործ կոլեկտիվներ, ճանաչված կատարողներ Մ. Աբրահամյանը, Լ. Զաքարյանը, Ս. Նավասարդյանը, Վ. Ստամբոլցյանը և շատ ուրիշներ: Հայ հանդիսատեսը մեկ անգամ չէ, որ ունկնդրել է չեխոսլովակյան «Սլուկ», ԳԴՀ-ի «Աուէ», հունգարական «Նեոտոն» և «Էքսպրես» վոկալ-գործիքային անսամբլների համերգները, ինչպես նաև Եվա Ծեպրագի, Լիլի Իվանովայի, Բիսեր Կիրովի, Կարել Գոթի, Ելենա Վոնդրաչկովայի, Յոզեֆ Լաուֆերի և եղբայրական երկրների շատ ուրիշ ճանաչված արտիստների գեղեցիկ կատարումները:

Մշակութային համագործակցությունը, հանդիսանալով սոցիալիստական ազգային կուլտուրաների փոխհարստացման ու մերձեցման կարևոր գործոն, առանձնահատուկ կարևորություն է ստացել միջազգային իրադրության ժամանակակից պայմաններում, երբ իմպերիալիզմը՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի դեմ շարունակում է իր «խաչակրաց արշավանքը»: Այսօր, առավել քան երբևէ, անհրաժեշտ են սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ միասնությունն ու համախմբվածությունը: Եվ չնայած այն հանգամանքին, ինչպես նշեց ՍՄԿԿ XXVII համագումարը, որ կապիտալիզմի ճգնաժամի հետ միասին ավելի վտանգավոր դրսևորում են ստանում հակակոմունիզմն ու հակասովետիզմը, այդուհանդերձ, մեր հասարակարգի կոլեկտիվիստական բնույթը և սոցիալիստական համագործակցության երկրների հումանիստական քաղաքականությունն ամուր հիմք են ազգային մշակույթների մերձեցման ու աշխատավորական մասսաների ինտերնացիոնալիստական դաստիարակության համար:

---

# ՏԻԵԶԵՐՔԻ ՄԱՐԴԱԲԱՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՐՈՆԻ ՏԵՍԱՆԿՅՈՒՆԻՑ

**Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
**կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

*Կյանքը տիեզերական երևույթ է,*
*այլ ոչ թե հատուկ երկրային.*
Վ. Ի. ՎԵՐՆԱԴՍԿԻ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՍՏՂԱՖԻԶԻԿԱՅԻ հաջողությունները միկրո և մակրոաշխարհի կառուցվածքի վերաբերյալ նորագույն տվյալների հետ միասին հանգեցրին գիտական տիեզերաբանության ստեղծմանը, որի արմատական պրոբլեմներից մեկը մնում է կյանքի ու բանականության առաջացումը Տիեզերքում: Մի շարք հանգամանքների բերումով այդ պրոբլեմը մեծ բանավեճ է առաջացրել Տիեզերքի այսպես կոչված մարդաբանական սկզբունքի առթիվ: Այն բանից հետո, երբ հայտնագործվել են մեր Տիեզերքի մի շարք հազվագյուտ առանձնահատկություններ, որոնք նպաստում են օրգանական կյանքի երևան գալուն, աստվածաբանորեն տրամադրված որոշ հայտնի մասնագետներ նորից են բարձրացրել Տիեզերքի բանական հիմքի հարցը: Վերստին սկսել են քննարկվել մարդու գոյության համար Տիեզերքի նպատակահարմարության հարցը, արարչության աստվածային ակտի մասին կրեացիոնիզմի՝ միջին դարերում ձևակերպված դոկտրինան: Ընդ որում բազմաթիվ փորձեր են արվել «գիտականացնելու» այդ դոկտրինան՝ օգտագործելով ժամանակակից քվանտային-ռելյատիվիստական պատկերացումները, նպատակ ունենալով հաստատել Տիեզերքի ոչ թե պատահական, այլ նպատակաուղղված արարչությունը մարդու համար:

Տիեզերածնության պրոբլեմների գիտական բացատրության կարևորությունը, հատկապես աթեիստական պրոպագանդայի համար, կապված է այն բանի հետ, որ «... արարչությունը այնպիսի մի պատկերացում է, որը շատ դժվար է դուրս մղել ժողովրդական գիտակցությունից» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 42, с. 125): Այս պրոբլեմի վերլուծությունը, հավանաբար, դուրս է գալիս գիտական իմացության շրջանակներից՝ ստանալով ոչ միայն աշխարհայացքային նշանակություն, այլև ընդգրկում է մարդկային գործունեության ավելի լայն կողմեր:

Ցավոք, Տիեզերքի զարգացման նախնական փուլերի մասին բավարար գիտական տեղեկությունների բացակայությունը ուղիներ է բացում ինտուիտիվ սուբյեկտիվիստական դատողությունների համար: Մասնավորապես, արտահայտվում են պատկերացումներ, որոնք հիմնված են «առանց մարդու Տիեզերքի աննպատակության» մասին հին հնդկական կրոնի դոգմաների վրա, այն մասին, որ այն ի սկզբանե ծրագրված ու կանխագծված է եղել գերբանականության, այսինքն՝ աստվածության կողմից: Այդ կենսաթրթիռ հարցերի նկատմամբ նման մոտեցումը պրոբլեմը գլխիվայր է դնում և թույլ չի տալիս կյանքի երևալը դիտել որպես Տիեզերքի էվոլյուցիայի փուլերից մեկը:

Աշխարհների բազմաթիվության և անսահմանության գաղափարը ենթադրում է բանական էակների երևան գալու հնարավորությունը Տիեզերքի շատ կետերում: 60-ական և 70-ական թվականներին սովետական հետազոտողներ Ա. Լ. Զելմանովը, Գ. Մ. Իդլիսը, Մ. Ա. Մարկովը առաջին անգամ սկսեցին լայնորեն քննարկել Տիեզերքի մարդաբանական սկզբունքը: Նրանք զարգացնում էին այն պատկերացումը, որ կոնկրետ, տվյալ Տիեզերքում տեղի ունեցող պրոցեսները կարող են հանգեցնել բանական մարդու երևան գալուն, իսկ այլ տիպի պրոցեսները կարող են տեղի ունենալ ինչ-որ տեղ և «առանց վկաների»:

Ինչպես պարզվել է, Տիեզերքի ֆիզիկական շատ հատկություններ և նուրբ կառուցվածքը ատոմային մակարդակով մեծ կախման մեջ են գտնվում հիմնարար ֆիզիկական հաստատունների թվական հարաբերակցությունից, որոնք բնութագրում են միկրո և մակրոաշխարհը: Ահա թե ինչու շատերին զարմացնում և այդքան անսպասելի են թվում այդ, այսպես կոչված, «մեծ թվերի» զուգադիպությունն ու հարաբերակցությունը, որոնք բնորոշ են այն Տիեզերքի համար, որ մենք դիտում ենք: Հարցը դրվում է այսպես՝ արդյոք դա չի՞ նշանակում, որ հիմնարար մեծությունների այդպիսի հարաբերակցությունը բնության կույր խաղի արգասիք, դիպվածի գործ չէ: Պրոբլեմի նման մեկնաբանման համար թեոլոգները օգտագործեցին Էյնշտեյնի հարաբերականության տեսությունից բխող հայտնագործությունները: Կրոնական բացատրությունների համար առանձնապես ջանասիրաբար օգտագործվել է Ա. Ա. Ֆրիդմանի 1922 թվականին հրատարակված աշխատությունը, որի մեջ ենթադրվում էր, որ ինչ-որ մի պահի Տիեզերքը գերխիտ կետից պայթել և արագ ուռել է մինչև ներկայիս չափերը՝ բոլոր ուղղություններով: Մի քանի տարի հետո կրթությամբ իրավաբան Էդվին Հաբլը կատարեց աստղագիտական մեծագույն հայտնագործություններից մեկը: Հեռավոր աստղերի ու գալակտիկաների սպեկտրների ուսումնասիրման օգնությամբ հաջողվեց սահմանել արձակվող լույսի տեղաշարժը երկար, կարմիր ալիքների կողմը, որը ստացել է «կարմիր տեղաշարժ» անվանումը: Հեռավոր գալակտիկաների արագ հեռացումը բոլոր կողմերը հավասարաչափ արագությամբ, որը պայմանավորում է «կարմիր տեղաշարժը», հաստատեց պատկերացումը ընդլայնվող Տիեզերքի մասին: Եվ ահա հենց այդ ժամանակ բարձրացվեց գերխիտ նյութի սկզբնական Մեծ պայթյունի հարցը, որից և գոյացել է Տիեզերքը: Նշանակում է, աշխարհի սկիզբը եղե՞լ է: Իսկ ի՞նչ է եղել մինչ այդ, դրանից առաջ: Ուրեմն ո՞վ կամ գոնե ի՞նչն է սկիզբ դրել աշխարհին, մի՞թե ոչ աստվածությունը: Այսպիսով, եկեղեցին անմիջապես սկսեց փորձնական տվյալներն ու մաթեմատիկական խիստ պատկերացումներն օգտագործել բիբլիական դոգմաների «գիտական» հիմնավորման համար, այդ թվում Տիեզերքը հատկապես մարդու, որպես նրա կենտրոնական տարրի, համար ստեղծելու մասին:

Վ. Ի. Լենինը մատնանշել է. «Բավական է մտաբերել մոդա դարձած ահագին թվով փիլիսոփայական ուղղությունները, որոնք այդքան հաճախ առաջ են գալիս եվրոպական երկրներում, սկսած թեկուզ այն ուղղություններից, որոնք կապված էին ռադիումի գյուտի հետ, և վերջացրած նրանցով, որոնք այժմ ձգտում են կառչել Էյնշտեյնին,— պատկերացնելու համար բուրժուազիայի դասակարգային շահերի և դասակարգային դիրքի միջև եղած կապը, նրա կողմից կրոնի բոլոր ձևերը պաշտպանելու և մոդայական փիլիսոփայական ուղղությունների գաղափարական բովանդակության միջև եղած կապը» (ԵԼԺ, հ. 45, էջ 32):

Հայրենական գիտական գրականության մեջ լայնորեն քննարկվում են Տիեզերքի ֆիզիկական և ֆիզիկաքիմիական այն առանձնահատկությունները, որոնք նպաստում են բանական մարդու երևան գալուն, որի միջոցով նա գիտակցում է ինքն իրեն. խոսքը որոշակի տիպի օրգանական կյանքի առաջացման մասին է: Կ. Է. Ցիոլկովսկու հիշատակին նվիրված՝ Կալուգայի XX հոբելյանական ընթերցումներում (1985 թվականի սեպտեմբերի 17—20) քննարկում էին մարդաբանական սկզբունքը և նրա նշանակությունը մեր օրերի բնագիտության համար: Վ. Վ. Կազյուտինսկու, Լ. Մ. Գինդիլիսի, Ա. Դ. Ուրսուլի և այլոց մի շարք ելույթներում նշվում էր, որ մարդաբանական սկզբունքի կրոնական բացատրությունների փորձերը ելնում են հիմնական հասկացությունների կամայական բնորոշումներից: Մեր Տիեզերքի եզակի գծերի սուբյեկտիվիստական և իդեալիստական մեկնաբանությունների դեմ հանդես են գալիս արևմտյան երկրների լայնորեն հայտնի այնպիսի գիտնականներ, ինչպիսիք են Պ. Դևիսը, Ռ. Դիկկեն և ուրիշներ: Միևնույն ժամանակ կրոնականորեն տրա-

Այդ կոնֆերանսում նորից քննության առարկա էր դարձել Թոմաս Աքվինացու միջնադարյան եկեղեցական այն դոկտրինան, որ Տիեզերքը ստեղծվել է մարդու համար և հանուն մարդու:

Մեծ պայթյունի առաջին փուլերում, մեզանից հեռավոր այն ժամանակներում տեղի ունեցած երևույթների նախնական պայմանների ու էության հարցը, ցավոք, առայժմ դժվար է լուծել: Սակայն դա չի նշանակում, որ դիտելով այսօրվա Տիեզերքը՝ չի կարելի դատողություններ անել նրա անցյալի մասին:

Ատոմների ու մոլեկուլների, կենսաբանական պոլիմերների՝ սպիտակուցների ու նուկլեինային թթուների, կառուցվածքի մասին եղած բազմաթիվ տվյալները ցույց են տալիս փոխադարձ սերտ կապը կենդանի ձևերի, դրանց առաջացման ու զարգացման փուլերի կամ Տիեզերքում կենսաբանական նյութի էվոլյուցիայի միջև: Այդ կապերը պարզ ցույց են տալիս, թե բնության մեջ ինչպես է տեղի ունենում մոլեկուլային կոմպլեքսների բարդացումը կամ վերմոլեկուլային կառուցվածքների կազմավորումը բավական բարդ կենսաբանական համակարգերի ստեղծման պրոցեսում: Ընդ որում պետք է հիշել, որ քվանտային-քիմիական օրինաչափությունների հիման վրա տեղի ունեցող տարրական կենսաբանական ռեակցիաները որոշվում են վերջին հաշվով ռեակցիա առաջացնող միացությունների կազմի մեջ մտնող ատոմների հատկություններով: Այսպիսով, բուսական և կենդանական օրգանիզմների առաջացման ուղիները հասկանալու համար ամենից առաջ անհրաժեշտ է նշել կենսահամակարգերի կառուցվածքային նմանությունը ատոմամոլեկուլային մակարդակով:

Ժամանակակից ֆիզիկաքիմիական և մոլեկուլային կենսաբանության նվաճումները թույլ են տալիս մեծ որոշակիությամբ պնդել, որ Տիեզերքում օրգանական կյանքի երևան գալը անհրաժեշտաբար բխում է նրա զարգացման պայմաններից: Հետաքրքրական փաստերից է նաև քիմիական տարրերի քանակական բաշխումը աստղերի մեջ, երկրագնդի կեղևում, աստղամիջյան միջավայրում, կենդանական կամ բուսական մարմիններում: Դրանց հիմնական մասը աստղերի մեջ ու կենդանի համակարգերում կազմում են Դ. Մ. Մենդելեևի աղյուսակի թեթև տարրերը, որոնք ունեն փոքր միջուկային զանգված և հետևաբար՝ փոքրաթիվ էլեկտրոններ: Դրանց թվին են պատկանում ջրածինը, ածխածինը, ազոտը:

Ծանր քիմիական տարրերից՝ ցինկը, մոլիբդենը, արճիճը, ոսկին, երկաթը և մյուսները կենդանական օրգանիզմներում պատահում են զգալիորեն ավելի փոքր քանակություններով՝ խաղալով կենսաբանական պրոցեսների կարգավորիչների դեր և նշվում են որպես միկրոէլեմենտներ կամ ուլտրամիկրոէլեմենտներ՝ կախված դրանց քանակից: Իսկ թեթևները կազմում են, կարծես, կենսաբանական մոլեկուլների՝ սպիտակուցների, ճարպերի, նուկլեինային թթուների կմախքը: Շատ կարևոր է, որ թեթև էլեմենտները կազմավորվել են արդեն Տիեզերքի զարգացման վաղ փուլերում, Մեծ պայթյունից հետո: Մի շարք այդպիսի տարրեր, ինչպես ծծումբը և ֆոսֆորը, որոնք հաճախ են հանդիպում կենսաբանական մոլեկուլներում, կազմավորվել են ավելի ուշ՝ որպես ջերմամիջուկային ռեակցիաների արգասիք, գուցե աստղերի պայթյունների ժամանակ:

Օրգանական նյութերի երկար մոլեկուլների շղթայիկների կմախքները բաղկացած են ածխածնից: Այդ էլեմենտն ունի մի շարք այնպիսի հատկություններ, որ չունի կրեմնիումը, թեև սա էլ Երկրագնդի վրա բավականին շատ է: Ածխածնի միացությունները կարող են գտնվել գազային և պինդ վիճակում: Նրանք լավ են լուծվում ջրում, ստեղծելով էներգիայով հարուստ միջատոմային կապեր՝ բավականաչափ շարժունությամբ, իսկ եզակի կապերը ատոմների միջև, օրգանական մոլեկուլների շղթաներում, կայուն են: Կազմելով ճյուղավորված ու ցիկլային օրգանական մոլեկուլներ՝ ածխածինը նրանց հնարավորություն է տալիս ընդունելու զանազան շարժական տարածական կառուցվածքների տեսք, ինչը սպիտակուցների և նուկլեինային թթուների գործողության կարևորագույն պայմանն է:

Աստղամիջյան միջավայրի, գազափոշե ամպերի, մետեորիտների քիմիական բաղադրության հետազոտությունները օգնեցին հայտնաբերել մեթանի, ֆորմալդեհիդի, ածխածնի ու ազոտի, ջրածնի միացությունների բազմաթիվ օրգանական մոլեկուլներ: Պարզվեց, որ գերցածր ջերմաստիճանների ժամանակ տիեզերական գործոնների՝ ճառագայթման, էլեկտրական պարպումների, ներգործությամբ հնարավոր է այդ մանր մոլեկուլներից կազմել ավելի բարդ, կենսաբանորեն կարևոր բնկորների տիպի մոլեկուլներ: Այսպիսով, Տիեզերքում հնարավոր է նախակենսաբանական բարդ օրգանական մոլեկուլների երևան գալը ընդհուպ մինչև պոլիմերները: Այսպես, Երկիր բերված Լուսնի հողի նմուշների մեջ հայտնաբերվել են ամինաթթուներ, որոնցից կազմվում են սպիտակուցներ, ծիրանաքարեր և պոլիցիկլային հոտավետ միացություններ: Մերչիսոնի երկնաքարի մեջ 1972 թվականին հայտնաբերվել էին բազմապիսի ամինաթթուներ: Օրիոնի համաստեղությունում առկա են շատ խիտ մոլեկուլային ամպեր, որտեղ սպեկտրաչափական հետազոտությունները ցույց են տալիս մի շարք օրգանական միացությունների, ինչպես նաև ամինաթթուների նախորդների առկայությունը:

Կենդանի համակարգերի բնորոշ առանձնահատկությունը պետք է համարել դրանք կազմող մոլեկուլների փոխգործողությունը թույլ էլեկտրամագնիսային ուժերի օգնությամբ և, դրա հետևանքով, կենսաբանական մոլեկուլների և կենսապոլիմերների կոմպլեքսների բարձր դինամիկությունը: Այդ ամենի հիմքն են թեթև էլեմենտների քվանտային-էլեկտրոնային և ատոմային կառուցվածքի առանձնահատկությունները, որոնցից էլ կառուցված են «կենդանի» մոլեկուլները: Այդ մոլեկուլների բարձր շարժունության և նրանց ֆունկցիայի միջև եղած փոխադարձ մեծ կապը նույնպես թույլ է տալիս էվոլյուցիա ապրել բավական մեծ արագությամբ: Գտնում են, որ այդ արագությունը բավարարում է աստղամիջյան միջավայրի քիմիական կազմի հաստատունությանը:

Հետևաբար, երեք գործոններ սահմանափակում են կյանքի փոխադարձաբար բացառող կամ բոլորովին ոչ նման ձևերի գոյության հնարավորությունը մեր Տիեզերքում: Առաջինը օրգանական մոլեկուլների կազմի ու կառուցվածքի նմանությունն է՝ դրանք բոլորն էլ բաղկացած են հիմնականում թեթև քիմիական տարրերից: Երկրորդը՝ մոլեկուլային կառուցվածքների փոխգործողությունն ու բարդացումը տեղի են ունենում գլխավորապես թույլ էլեկտրամագնիսային ուժերի միջոցով: Եվ, վերջապես, երրորդը՝ դրանք ավելի ծանր էլեմենտներն են, որոնք, լինելով անչափ փոքր քանակություններով, մտնում են կենդանի օրգանիզմների կազմի մեջ՝ կատարելով հիմնականում կենսաքիմիական ռեակցիաների կարգավորիչի ֆունկցիա: Այստեղից պարզ է, որ կենսաբանական աշխարհը խստորեն համապատասխանում է որոշակի պայմանների: Նշանակում է «պանսպերմիայի» գաղափարը, որ այժմ ջանում են վերածնել միանվագ ստվածային արարչության ապացուցման դիրքերից, հիմնավոր չէ: Այդ ամենը չի՞ նշանակում, արդյոք, որ երկրային կենսաձևը բնորոշ է ու միակն է մեր ողջ Տիեզերքի համար: Համենայն դեպս, միկրոաշխարհը՝ կենդանի համակարգերի ատոմների ու մոլեկուլների աշխարհը, կառավարող օրինաչափությունները կանխորոշում են նրանց հիմնական հատկությունների նմանությունը մակրոմակարդակում, այսինքն՝ բջիջների, հյուսվածքների և օրգանների մակարդակով:

Եվ այսպես, պարզ է, որ կյանքի նախապայմանները Տիեզերքում ռեալ կերպով գոյություն ունեն: Դրանք են միկրո և մակրոաշխարհի օրինաչափությունները: Կենդանի տարրի առաջացման ու զարգացման հնարավորությունը որոշվում է մոլորակային համակարգերի առկայությամբ: Հենց մոլորակների վրա է, որ բարենպաստ պայմաններ կան բիոհամակարգերի բարդացման ու ինքնակազմակերպման համար և, հետևաբար, կենդանի մատերիայի ավելի արագացած զարգացման համար՝ մինչև բանական մարդը: Սակայն նման պայմանները թեպետև բացառիկ են, դրանք թույլ չեն տալիս անհիմն կերպով պնդել, որ Տիեզերքի կառուցման ու զարգացման պլանը կանխագծված է եղել աստվածային ուժով: Կարելի է ենթադրել, որ ամեն մի ինքնակազմակերպվող համակարգ որոշակի բարենպաստ պայմաններում ընդունակ է ինքնազիտակցության հասնելու, և ոչ անպայման երկրային բանականության ձևով: Չի կարելի նաև բացառել կենդանի համակարգերի առաջացման ուրիշ, գիտության կողմից դեռ չհայտնաբերված օրինաչափությունների հնարավորությունը, երկրային կյանքի ու բանականության ձևերից տարբեր այլ ձևերի գոյության հավանականությունը: Իսկ պնդել ուրիշ Տիեզերքների անհնարինությունը, որոնցում չկան բանական էակներ և ոչ ոք չի կարող դիտել ու ճանաչել դրանք, նշանակում է բնական երևույթները կախման մեջ դնել անհրաժեշտության և պատահականության հասկացության սուբյեկտիվիստական մեկնաբանումից: Հենց այդպիսի գծերով են բնութագրվում մարդաբանական սկզբունքի ժամանակակից կրոնական բացատրությունները: Նման մեկնաբանումը հուսալի հիմք չի ծառայում մարդու բնական պատմության, Տիեզերքի մեջ նրա տեղի ու նշանակության հետագա խոր վերլուծության համար:

# 1917: ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՏԱՐԵԳՐՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ

Գարնան-ամռան ամիսներին բոլշևիկների ղեկավարությամբ Հայաստանում տեղի ունեցան բազմամարդ միտինգներ, ցույցեր, բանվորական գործադուլներ ու գյուղացիական ելույթներ, որոնք ուղղված էին բուրժուական ժամանակավոր կառավարության դեմ:

Մի շարք շրջաններում գյուղացիները բռնագրավում են կալվածատիրական հողերն ու անտառները, ստեղծում հողային կոմիտեներ:

Մայիսի 25-ին Ջալալօղլիում ստեղծվեց սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն, որի բոլոր անդամները, «Կավկազսկի ռաբոչի» թերթի վկայությամբ, բոլշևիկներ էին:

Հունիսի 22-ին լույս է տեսնում Ալեքսանդրապոլի բոլշևիկների օրգան «Նոր կյանք» թերթի անդրանիկ համարը, որն իր առաջնորդողում գրում է. «Բարձր բռնած բոլոր ազգությունների բանվորության և թշվառ գյուղացիության արյուններկ կարմիր դրոշը, «Նոր կյանքը» գնալու է մարդկության լավագույն ապագայի՝ սոցիալիզմի անշեղ ուղիով»:

Հուլիսին «Պրավդա» թերթը (№ 87) տպագրեց Հայաստանից ստացված զինվորների մի նամակ, որտեղ նրանք գրում էին. «Մենք 491-րդ դաշտային շարժական հոսպիտալի զինվորներս, Հայաստանի հեռավոր կիրճերից մեր ջերմ ողջույնն ենք հղում ձեզ՝ պատերազմի դեմ ձեր ազնիվ և արդարացի քարոզի համար... Կցանկանայինք, որ «Պրավդայի» ձայնը թափանցեր մեր հայրենիքի բոլոր անկյունները:

Հուլիսի 9-ին Ալեքսանդրապոլում բացվեց Կովկասյան բանակի հեռագրիչների համագումարը: Հիմնական զեկուցողներից մեկը՝ բոլշևիկ Գ. Աթարբեկյանն իր զեկուցման մեջ մերկացրեց ժամանակավոր կառավարության և նրան պաշտպանող էսէռների, մենշևիկների, դաշնակների հակահեղափոխական գործունեությունը:

Պետրոգրադում հուլիսյան իրադարձությունների կապակցությամբ Ալեքսանդրապոլում բոլշևիկները հուլիսի 9-ին միտինգներ կազմակերպեցին, որին մասնակցում էին մոտ 5000 զինվորներ ու մեծ թվով բանվորներ: Հանդես եկան տեղական բոլշևիկների ղեկավարներ Բ. Ղարիբջանյանը, Պ. Արվելաձեն և ուրիշներ: Նրանք պահանջում էին անվստահություն հայտնել ժամանակավոր կառավարությանը, խզել կապերն իմպերիալիստական բուրժուազիայի հետ և վարել ակտիվ խաղաղասիրական քաղաքականություն:

ՌՍԴԲ(բ)Կ ապրիլյան կոնֆերանսից հետո, հուլիսի 16-ին հրավիրվեց Ալեքսանդրապոլի բոլշևիկների համաքաղաքային ժողով, որտեղ լսվեց կուսակցության Կենտկոմի ներկայացուցիչ Բ. Բորյանի զեկուցումը ընթացիկ մոմենտի և բոլշևիկյան տակտիկայի մասին: Ժողովն միահամուռ բանաձև ընդունեց մենշևիկներից կազմակերպորեն անջատվելու և որպես ինքնուրույն կազմակերպություն ձևավորվելու մասին: Ընտրվեց ՌՍԴԲ(բ)Կ Ալեքսանդրապոլի կազմակերպության բյուրո:

Օգոստոսից ՌՍԴԲ(բ)Կ Ալեքսանդրապոլի կոմիտեն հրատարակում է «Պրավդա ժիզնի» շաբաթաթերթը՝ Պ. Արվելաձեի և Բ. Ղարիբջանյանի խմբագրությամբ: Այն մեծ դեր խաղաց ոչ միայն Ալեքսանդրապոլում, այլև Սարիղամիշում, Կարսում և այլ շրջաններում բանվորներին ու զինվորներին բոլշևիկների շուրջը համախմբելու գործում:

Օգոստոսի վերջին, գեներալ Կոռնիլովի հակահեղափոխական դավադրության դեմ բոլշևիկյան կուսակցության պայքարի օրերին, Ալեքսանդրապոլի, Սարիղամիշի, Երևանի, Կարսի և այլ վայրերի բոլշևիկների պահանջով ստեղծվեցին արտակարգ հանձնաժողովներ, հեղափոխական շտաբներ՝ կոռնիլովշչինայի դեմ պայքարելու համար:

Օգոստոսին տեղի ունեցավ Ալավերդու բանվորների գործադուլը, որը գլխավորում էին բոլշևիկյան կազմակերպությունները:

Հանձնված է շարվածքի՝ 19.08.87 թ.: Ստորագրված է տպագրության 17.09.87 թ.: ՎՖ 08579:
Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 18032: Պատվեր՝ 1720:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2